# ՆՈՐ ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ

## Ա. ՄԱՍ


ՇԱՐԱԳԻՐ

ՎԱՀԱՆ Վ. ՏԷՐ - ՄԻՆԱՍԵԱՆ

ՎԱՒԵՐԱՑԵԱԼ ԱԶԳ. ԿԵԴՐ. ԿՐՕՆԱԿԱՆ ԺՈՂՈՎԷՆ



ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ

Վ. ԵՒ Հ. ՏԷՐ-ՆԵՐՍԷՍԵԱՆ

Կ. ՊՈԼԻՍ

1905

# ՆՈՐ ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ





ՄԱՍՆ Ա.





ՇԱՐԱԴԻՐ

ՎԱՀԱՆ ՎԱՐԴԱՊԵՏ ՏԷՐ-ՄԻՆԱՍԵԱՆ



ՎԱՒԵՐԱՑԵԱԼ ԱԶԳ. ԿԵԴՐ. ԿՐՕՆԱԿԱՆ ԺՈՂՈՎԷՆ



معارف عموميه نظارت جليله‌سنك فى ٢٨ شعبان ٣٢٢ تاريخلى
و ٥٢١ نومرولى رخصتنامه‌سيله طبع اولنمشدر

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ
Վ. ԵՒ Հ. ՏԷՐ-ՆԵՐՍԷՍԵԱՆ
Կ. ՊՈԼԻՍ

1905



# ԱՌ

# ԱԼԻՔՍԱՆ ԷՖ. ԽՕՐԱՍԱՆՃԵԱՆ

## Ի ՅԱՒԵՐԺ ՅԻՇԱՏԱԿ

Լուսաւորչի լոյս հաւատքի ճրագը սիրեցիր, Լուսաւորչի Աստուածն ալ՝ ԽՕՐԱՍԱՆՃԵԱՆ տնակիդ ճրագը հաճեցաւ վառ պահել, կեանք տալով անդրանիկ թոռնիկիդ, Ալիքսանի՛դ:

Ուստի ահա շիրմիդ արգադիր կը բերեմ սոյն գրքոյկը, որ իւղն ու պատրոյգն է այդ ճրագին, զոր շա՛տ սիրեցիր՝ հայ քրիստոնեայ ապրելով եւ հայ քրիստոնեայ զաւակներ տալով ազգիդ:

# ԽՕՍՔ ՄԸ



Այս է այս գրքուկին յառաջաբանն ու վերջաբանը թէ Աստուած յայտնուած է, մարդուն տալու համար երջանկութիւն։

Այս տիեզերական ճշմարտութեան մարդկային բանն իսկ համոզուած ըլլալով՝ ջերմին սիրով փարած է Սուրբ-Գրքին, որ հաւատարիմ միակ աւանդապահն եղած է այս ճշմարտութեան բովանդակ աշխարհի մէջ։

Թէ ինչո՞ւ Աստուած յայտնուած է. — այդ չէ այնքան գիտնալու բանը, որքան գիտնալ թէ ինչո՞ւ մարդուն մէջ բան մը կայ որ կ'ըղձայ իմանալ թէ մարդ ո՞րն է եւ ինչո՞ւ ստեղծուած է։

Ահա զայս աւանդելու համար շարագրուած է այս գիրքը, անուանելով զայն ՆՈՐ-ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ, նոր՝ կրօնի եւ բարոյականի ճշմարտութիւնները մինչեւ ցարդ հրատարակուած Քրիստոնէականներէն տարբեր դասաւանդութեամբ նոր ուղղութիւն մը ունենալուն համար։

Եթէ հայ ուսանողութիւնը օգտուի այս գրքուկէն, այդ իսկ բաւ է ինձ մխիթարութիւն, իբր յետին սպասաւոր — լուսարար Լուսաւորչի լոյս հաւատքի անշէջ ճրագին։



# ԳԼԽԱԿԱՐԳՈՒԹԻՒՆ








# ԴԱՍ Ա.

## ԱՍՏՈՒԱԾ

Ո՞վ ստեղծեց զքեզ ։
— Աստուած ։

Ինչէ՞ն գիտես թէ Աստուած կայ ։
— Բանը այսինքն խելքը, զոր ունի մարդ, կը վկայէ թէ մարդ զինքն ստեղծած չէ, այլ ինքն ստեղծուած է ուրիշէ մը, որ է ԱՍՏՈՒԱԾ ։

Այդ ինչէ՞ն յայտնի է ։
— Վասն զի մարդ ոչ թէ զինքն ստեղծած չէ, այլ և ոչ իսկ տիեզերքը, որ մարդկային զօրութենէն ու իմաստութենէն շատ գերիվեր հրաշակերտ մըն է ։

Մարդ և տիեզերք միթէ դիպուածով չե՞ն եղած ։

— Աշխարհիս սկիզբէն մինչեւ ցայսօր չէ տեսնուած և չէ լսուած որ նոր բան մը եղած ըլլայ ։ Եւ ինչպէս կարելի չէ կարծել թէ տուն մը ինքնին շինուած կամ արտ մը ինքնին հերկուած ըլլան, այսպէս կարելի չէ որ մարդ ու տիեզերք ինքնին ստեղծուած ըլլան ։

Աստուած ի՞նչ է ։

— Աստուած միայն ՀՈԳԻ է (*) ։ Եւ է մի, անեղ, յաւիտենական, ամենակարող, ամենագէտ, ամենուրեք, անփոփոխ, բարի, իմաստուն, սուրբ, արդար ևայլն ։

Ինչէ՞ն գիտես թէ Աստուած մի է ։

— Վասն զի միութեան մէջ միայն ամբողջ զօրութիւն կայ. եթէ երկու կամ երեք աստուածներ ըլլան, այն ատեն միեւնոյն զօրութիւնը կը բաժնուի, որով և ոչ մին ամենակատարեալ Աստուած կրնայ ըլլալ ։

Ուրիշ ի՞նչ փաստ կայ թէ Աստուած մի է ։

(*) «Հոգի է Աստուած, և երկրպագուաց նորա՝ հոգւով և ճշմարտութեամբ պարտ է երկիրպագանել» (Յովհ. Դ. 24) ։

— Որովհետեւ Աստուած միշտ ներգործութեան մէջ է, կը հետեւի թէ միութեան մէջ է,. վասն զի եթէ երկու կամ աւելի աստուածներ ըլլային, անոնց իրարու հակառակելովը՝ տիեզերքին ներդաշնակութիւնը կը խանգարուէր ։

Ինչէ՞ն գիտեմք թէ Աստուած անեղ է ։

— Աշխարհիս մէջ կը տեսնենք որ ամէն բան սկիզբ ունի, ուրեմն կայ անսկիզբն ու անեղ էակ մը, որմէ սկիզբ առած է ամէն բան ։

Ինչէ՞ն գիտենք թէ Աստուած յաւիտենական է ։

— Աստուծոյ անեղ և անսկիզբն ըլլալէն կը հետեւի թէ յաւիտենական է, վասն զի ան որ ինքնեղ ու անսկիզբ է, վերջ ալ չունի ։

Ամենակարողութենէն ի՞նչ կ'իմացուի ։

— Թէ Աստուծոյ համար անկարելի բան չկայ. մէկ ակնթարթի մէջ ամէն բան կարող է ընել, մինչդեռ արարածն այնքան ունի զօրութիւն, որքան Արարիչն անոր տուած է ։

Ամենագիտութենէն ի՞նչ կ'իմացուի ։

— Թէ Աստուծոյ ամէն բան յայտնի է,

այսինքն գիտէ անցեալը , ներկայն և ապառնին , և մեր սրտին ամենածածուկ խորհուրդներն անգամ արդէն գիտէ ։

Ամենուրեքութենէն ի՞նչ կ'իմացուի ։

— Թէ չկայ և ոչ մէկ տեղ ուր Աստուած չկրնայ ներգործել , վասն զի ինքն է անհունապէս զօրութիւն, որ ոչ մէկ տեղ կ'ամփոփուի ։

Անփոփոխութենէն ի՞նչ կ'իմացուի ։

— Կ'իմացուի թէ Աստուած ինչ որ էր սկիզբէն , նոյն է այսօր և յաւիտեան , վասն զի փոփոխութիւնն է ստեղծուածներու յատուկ , և ոչ ստեղծող Աստուծոյ ։

Աստուծոյ բարութիւնն ի՞նչ է ։

— Վասն զի ինքն Աստուած աշխարհս կը խնամէ և իր բարութիւնը և ոչ երբէք կը զլանայ , և մենէ եւս կը պահանջէ բարի ըլլալ և իրարու բարութիւն ընել ։

Աստուած սուրբ ըսելէն ի՞նչ կ'իմացուի ։

— Կ'իմացուի թէ ինքն Աստուած ոչ թէ ամենեւին սուրբ է , այլ մենէ եւս սրբութիւն կը պահանջէ ։

Աստուծոյ իմաստութիւնն ի՞նչպէս կ'երեւի ։

— Իր ամենակարողութենէն ու ամենագի-տութենէն կը հետեւի թէ ունի այնպիսի իմաստութիւն, որոյ հետ մեր իմաստութիւնը եթէ բաղդատուի, մերն է պուտ մը ջուր ովկիանոսներու քով։

Աստուծոյ արդարութիւնը ի՞նչպէս կ'երեւի։

— Աստուծոյ արդարութիւնը յայտնապէս կ'երեւի իր գործերէն, վասն զի նա ինքն է որ բարին կը պատուէ և չարը կը պատժէ. այս է աստուածային արդարութեան դատաստանը։

Ե՞րբ և ի՞նչպէս է այս դատաստանը։

— Աստուածային արդարութեան դատաստանը թէ ե՞րբ և ի՞նչպէս կ'ըլլայ, այդ մեր խելահասութենէն շատ վեր է. «Զի ո՞վ գիտաց զմիտս Տեառն, կամ ո՞ խելամուտ եղեւ խորհրդոց նորա»։

Ուրիշ կատարելութիւններ ունի՞ Աստուած։

— Այո՛, որպիսի են թէ Աստուած ճշմարիտ է և հաւատարիմ այսինքն իր խօսքերն ու խոստումները ճիշտ են և կը կատարուին, և թէ Աստուած բան մը չխոստանար, որ չկատարուի։

Աստուածային այդ կատարելութիւններէն ի՞նչ կ'ըմբռնուի ։

— Թէ Աստուած ունի այնպիսի միտք, որ ոչ ոք ունի և այս միտքն իր նախախնամութեան մէջ յայտնի կը տեսնուի ։

## ԴԱՍ Բ.

### ՆԱԽԱԽՆԱՄՈՒԹԻՒՆ

Նախախնամութիւնն ի՞նչ է ։

— Աստուածային այն բարերար տեսչութիւնն, որով տիեզերք և մարդ կը պահպանուին և կը խնամուին ։ Նա որ ստեղծեց տիեզերքը, վայրկեան մը անգամ զայն բնաւ չլքաներ, այնպէս որ առանց Աստուծոյ գիտութեան բան մը ո՛չ եղած է, ոչ կ'ըլլայ և ոչ պիտի ըլլայ ։

Ի՞նչ ապացոյց կայ այդ մասին ։

— Մարդիկ որ Աստուծոյ չափ բարի չեն, երբ կը դուրգուրան իրենց զաւակներուն և ձեռակերտներուն վրայ, հապա որքա՜ն աւե-

նաքարքին. Աստուած իր բոլոր արարածներուն վրայ ։

Ուրեմն ո՞յք են ամենամեծ վկայ աստուածային նախախնամութեան ։

— Երկինք և երկիր և ամենէն աւելի մարդը ։

Երկինք ի՞նչպէս կը վկայէ ։

— Այն անթիւ աստղերն որ անդադար թաւալելով օրական ու տարեկան շրջաններ ունին, եթէ Աստուած զանոնք չպահէ կանոնաւորութեան մէջ, ըստ բաղդի տատանելով իրարու պիտի զարնուէին և ահագին խառնաշփոթութեամբ պիտի փճանային ։

Երկնքին մէջ ո՞րն է աւելի մեծ վկայն աստուածային փառաց ։

— Արեւը, որ համակ լոյս է, և շրջան կ'ընէ այնպիսի եղանակով որ եթէ քիչ մը աւելի երկրին մօտենայ, ամէն տունկ և կենդանիներ կ'այրուին և ջուրը կը չոգիանայ. իսկ եթէ քիչ մը հեռանայ, ջուրը կը սառի և տունկերն ու մարդիկ ցուրտէն չեն կրնար ապրիլ ։

Երկիրս ի՞նչպէս կը վկայէ ։

— Երկիրս ունի ծառեր, ծաղիկներ և բոյսեր, որոց մէկ մասը մեզ սնունդ և մէկ մասը մեզ դեղ են, և նաև զմեզ զուարթ կ՚ընեն իրենց գոյներովն ու հոտերովը։

Ուրիշ ինչե՞ր ունի երկիրս։

— Կենդանիներ, որոց մէկ մասը մեզ կը ծառայէ, մէկ մասը զմեզ կը կերակրէ, կամ զմեզ կը հագուեցնեն իրենց մորթերովն կամ բուրդովը։

Ուրիշ ի՞նչ ունի երկիրս։

— Աստուած այնպէս կարգադրած է որ մեր պէտքերը հոգացուին ամէն կլիմայի համեմատ, տաք երկիրներու մէջ ստեղծելով բամպակն ու շերամը, ուր թեթև հագուստի պէտք կայ, և ցուրտ երկիրներու մէջ ստեղծելով խոշոր կենդանիներու բուրդն ու մորթը, ուր տաքուկ հագուստի պէտք կայ։

Ինչո՞ւ մթնոլորտն ունի կապոյտ և ծովն ունի կանանչ գոյն։

— Որովհետև եթէ տարբեր գոյն ունենային, մեր աչերը պիտի շլանային կամ խայթուէին։ Ահա արարիչն Աստուած այնպէս ստեղծած է երկիրս, որ մարդիկ զայն վա-

ջելեն , և բան մը չկայ երկրիս մէջ , որ մարդուն անպէտ ըլլայ ։

Մարդն ինչպէ՞ս կը վկայէ ։

— Մարդկային հրաշակերտ կազմուածքն իսկ մեծ ապացոյց է աստուածային փառաց ։ Առաջին , աչքերն՝ որք զոյգ են , կ'ամփոփեն իբր հայելի՝ ամբողջ տիեզերքը և հաստատուած են այնքան ճշդութեամբ , որ եթէ ուրիշ կերպ ըլլար , անոնց օգտակարութիւնն անհնար կ'ըլլար ։

Երկրո՞րդը ։

— Ականջներն, որոց դոդաւոր ձեւն և զարմանալի կերպով ձայները մեր հոգւոյն հաղորդելն է վկայ աստուածային անսահման զօրութեան և իմաստութեան ։

Երրո՞րդը ։

— Ձեռներն ու ոտները , որովք և եթ դիւրին է մեզ գործել . դիտել պէտք է թէ Աստուած մեր կարեւոր անդամները զոյգ ըրած է , որպէս զի եթէ մին վնասուի , միւսը գործածուի ։

Չորրո՞րդը ։

— Մեր լեզուն , որ մեզ խօսելու զօրու-

թիւն կուտայ, որով մարդկային ընկերութիւնը կը կազմուի, կ'ազնուանայ եւ կը բարգաւաճի ։

Լեզուն ուրիշ ի՞նչ յատկութիւն ունի ։

— Նա կ'առնու կերակուրներու եւ ըմպելիքներու համը, որով վնասակարները կը գանենք եւ կը զգուշանանք եւ օգտակարները կը վայելենք ։

Այս ամենէն ի՞նչ կը հետեւի ։

— Տխմար ըլլալու է մարդ երբ կարծէ թէ մեր ուղեղն ու լեզուն, թոքերն ու կոկորդը, եւ մեր բոլոր անդամները իրարու յարմարեր են պատահաբար, առանց իմաստուն եւ հզօր վարպետի մը, առանց Աստուծոյ մը ։

Աստուծոյ փառաց ամենամեծ վկայն ո՞վ է մեր մէջ ։

— Նոյն ինք մեր հոգին, որ կը վկայէ թէ Աստուած մը կայ, որ յայտնուած է մեզ ։

Հոգին ուրիշ ի՞նչ առաւելութիւններ ունի ։

— Նա է որ մեր մէջ կը գործէ այնպիսի զօրութեամբ, որով գիտակից կ'ընէ զմեզ

բարւոյն և չարին, բարին մանաւանդ սիրել տալով մեզ և խորշել տալով մեզ չարէն։

Այդ ինչէ՞ն յայտնի է։

— Վասն զի մարդկային ամէն ջանք ու ճիգ, որ եղած են և կ'ըլլան տակաւին, միայն և միայն բարւոյն և օգտակարին համար են։

Այդ ամենէն ի՞նչ կը հետեւի։

— Կը հետեւի թէ Աստուծոյ բոլոր արարածներէն այսինքն բովանդակ տիեզերքէն ա՛լ աւելի հիանալի հրաշակերտը՝ մարդն է միայն։

---

## ԴԱՍ Դ.

## ԱՒԱՆԴՈՒԹԻՒՆ

Ի՞նչ աւանդութիւն կայ թէ Աստուած կայ։

— Աշխարհիս սկիզբէն մինչեւ ցայսօր ամէն ատեն և ամէն տեղ մարդկային ամէն բերան խոստովանած է թէ Աստուած մը կայ, միայն «Ասաց անզգամն ի սրտի իւրում թէ

ոչ դոյ Աստուած »․ բայց ո՛չ միտքին մէջ, ուր Աստուծոյ գիտութեան լոյսը կայ ։

Ի՞նչ ըսել է այդ ։

— Վասն զի սիրտն է հակամէտ չարին, և ով որ սրտէն կը թելադրուի և ոչ միտքէն, չար կը գործէ, չընդունիր որ զինքը տեսնող ու պատժող Աստուած մը ըլլայ ։

Այդ ինչէ՞ն յայտնի է ։

— Վասն զի մարդիկ ամէն ատեն և ամէն տեղ ուրիշներու բարիք ընելու և գոհունակութիւն մը զգալու գիտակցութիւնն ունին, այս է խղճի ձայնը կամ խղճմտանքը, որ Աստուծոյ ձայն ըսել է ։ Իսկ ուրիշներու երբ չարիք ընեն, դժգոհութիւն մը զգալու գիտակցութիւնն ալ ունին, այս է խղճի խայթը կամ խղճահարութիւնը․ ուստի, ով որ խղճի ձայնին կամ խղճի խայթին մտիկ չըներ, սրտին ուզածը կ՚ընէ և ոչ միտքին, հետեւաբար չար է, անզգամ է ։

Ուրիշ ինչո՞վ կը հաստատուի թէ Աստուած մը կայ ։

— Պատմական լոյսով, վասն զի մարդկային կեանքն ամէն ատեն և ամէն տեղ ակնա-

տես եղած ըլլալով, ահաւոր և փառաւոր տեսարաններու և դէպքերու, անակնկալ ելեւէջներու և փոփոխութիւններու, վկայած է թէ այս ամէնուն մէջ Աստուծոյ մատը կայ։

Ուրիշ ի՞նչ փաստ կայ։

— Աշխարհիս սկիզբէն ի վեր մինչեւ ցայսօր չէ եղած քաղաք մը, որ Աստուծոյ անունով տաճար կամ մեհեան, գիւղ՝ մատուռ կամ բագին, տուն՝ որ թերափ ունեցած չըլլայ, և մարդկային ամէն մեծագործութիւններու և հեղինակութիւններու խորհրդանիշն եղած են Աստուած բառը և բարի ըլլալու ու բարի ընելու գաղափարը։

Բարոյական մեծագոյն փաստը ո՞րն է։

— Բարոյական մեծագոյն փաստն է որ ամէն մարդ իր յետին ճգնաժամերուն մէջ իր տէրտին տէրմանին իրմէն վեր մէկէ մը՝ Աստուծմէ փնտռած է. մարդուն առաջին և վերջին բառն եղած է միշտ ԱՍՏՈՒԱԾ։

Հին ատեն ճշմարիտ աստուածպաշտութիւնը ի՞նչպէս կը յայտնուէր։

— Աղօթքով և զոհով։

Աղօթքով ի՞նչպէս ։

Աստուծոյ անունը տալով մարդիկ ընդհանրապէս կ՚աղօթէին բացօթեայ, մերթ բազկատարած, մերթ երկրպագութեամբ, մերթ ծնրադիր ըլլալով։

Միշտ այդպէ՞ս աղօթեցին ։

— Ո՛չ, այլ եղաւ ժամանակ որ Աստուած պաշտուեցաւ վրանի տակ, ուր կը մտնէր տան մը կամ գերդաստանի մը նահապետը և կ՚աղօթէր ինք ներսը և իրենները դուրսը ըլլալով, այս էր հաւաքական աղօթքի հին ձեւը ։

Զոհո՞վ ինչպէս ։

— Մարդիկ երբ սկսան աղօթել, Աստուծոյ անունով զոհ ընելու գաղափարն ալ ունեցան ։

Այդ ինչպէ՞ս կ՚ընէին ։

— Աստուծոյ պարգեւած և իրենց աշխատութեամբ ստացած ո՛ եւ է ազնիւ մէկ բան Աստուծոյ անունով նուիրական ընել, զոր օրինակ ցորեն, պտուղ և մանաւանդ սուրբ անասուններ ։

Զոհերն ո՞ւր կը դնէին ։

— Սեղանի վրայ, ուր կամ կ'այրէին զոհը, այս էր ողջակէզը. և կամ եթէ անասուն չըլլար, զայն հոն կը ձգէին առանց այլ եւս դպչելու անոր։

Ուրիշ ի՞նչ կ'ընէին նահապետք։

— Քար մը կը տնկէին, որ էր վկայութիւն իրենց զաւակներուն ու թոռներուն թէ Աստուած պաշտուած է իրենց պապերէն. այս էր արձանը, զոր իւղով եւս կ'օծէին երբեմն։

Աստուածպաշտական այդ ձեւերն ե՞րբ փոխուեցան։

— Երբ մարդիկ հետզհետէ մոլորելով ապականեցան կռապաշտութեամբ, հնարեցին ի պաշտօն սուտ աստուածներու՝ անճոռնի և անգութ ձեւեր և արարողութիւններ։

Բոլոր մարդիկ մոլորեցա՞ն։

— Ո՛չ, Աստուած ընտրեց Աբրահամ նահապետը, տեսնելով անոր հաւատքը և օրհնեց զինքն ու անոր սերունդը։

Ինչէ՞ն յայտնի է այդ։

— Սուրբ Գրքէն, որով հաստատուած է թէ նոյն իսկ Աստուած զինքն անձամբ յայտնած է ատեն ատեն գերբնական կերպով։

## ԴԱՍ Դ.

## ՅԱՅՏՆՈՒԹԻՒՆ

*Գերբնական յայտնութեան հարկ կա՞ր ։*

— Այո՛, վասն զի մարդն որքան որ Աստուծոյ վրայ գաղափար ունենար, այլ այն շատ աղօտ պիտի ըլլար, և ոչ երբեք պիտի ճանչէր իր Աստուածը այնպէս, որպէս կը փափաքէր ։

*Կարելի՞ էր և պէտք մը կա՞ր այդ յայտնութեան ։*

— Այո՛, վասն զի Աստուծոյ համար անկարելի բան չկայ, և մանաւանդ որ զայն ընդունելն էր մարդուն հնարաւոր և կարեւոր ։

*Ինչո՞ւ ։*

— Վասն զի եթէ Աստուած չընէր մարդուն այդ շնորհը, ուրեմն ինչո՞ւ ստեղծած էր մարդը, և մարդն ի՞նչպէս պիտի գիտնար թէ ի՞նչ է Աստուծոյ բուն կամքը ։

*Առանց աստուածային յայտնութեան ուրեմն անհնա՞ր էր այդ ։*

— Այո՛, վասն զի մարդկային հանճարն երբեք ինքնին չէր կրնար գտնել այն ճշմարտութիւնները, որք հետզհետէ, անընդհատ, Աստուծմէ յայտնուեցան, և որք միայն պիտի տային մարդուն իսկական երջանկութիւն ։

Այդ ճշմարտութիւնները ո՞ւր պահուած են ։

— Սուրբ Գրքին մէջ, որ է Աստուածաշունչ Գիրքը, այսինքն Աստուծոյ ներշնչութեամբ գրուած Գիրքը ։

Սուրբ Գիրքը քանի՞ մասի կը բաժնուի ։

— Երկու մասի, Հին և Նոր Կտակարան ։ Հինը մարգարէները գրեցին, իսկ Նորը առաքեալները ։

Ինչէ՞ն յայտնի է թէ այդ գիրքը Աստուածաշունչ գիրք է ։

— Վասն զի ունի պատմական, բարոյական և մարգարէական այնպիսի գերազանց առաւելութիւններ, որք յայտնի կը հաստատեն թէ այդ գիրք մարդկային տկար մտքի գործ չէ ։

Ի՞նչ է իր պատմական գերազանցութիւնը ։

— Որովհետեւ կրօնի մը հիմն են աւանդութիւնն ու պատմութիւնը, Սուրբ Գիրքն ալ պատմական անընդհատ կապ մը, ինչպէս

յայտնի է, «Եղիցի լոյս և եղեւ լոյս», այս խօսքէն մինչեւ Յովհաննու Յայտնութեան գրքին «Տեսի երկին նոր և երկիր նոր», այս խօսքը։ Այս այնպիսի մէկ շղթայ է որ հին աշխարհի սկիզբը նոր աշխարհի մը սկիզբին հետ կը կապէ։

Ի՞նչ է բարոյական գերազանցութիւնը։

— Որովհետեւ ճշմարիտ կրօնի մը նպատակն ըլլալու է մարդկային երջանկութիւնը միայն, Սուրբ Գիրքն ալ ունի բարոյական այնպիսի ճշմարտութիւններ, որոց հաւատալով և անսալով հնար է մարդուս՝ հասնիլ մինչեւ աստուածային նմանութեան այսինքն կատարելութեան։

Ի՞նչ է իր մարգարէական գերազանցութիւնը։

— Որովհետեւ կրօնի մը ճշմարտութեան վկայ է նաեւ մարգարէութիւնը, Սուրբ Գիրքն ալ ունի այնպիսի մարգարէութիւններ, որք միշտ կատարուած են և դեռ կը կատարուին։

Ո՞րն է այդ մարգարէութիւններուն ամփոփումն։

— Հրէութիւնը անցած ժամանակի մարգարէական վկայն է քրիստոնէութեան հա-

մար, իսկ քրիստոնէութիւնն է վկայ ներկայ և ապագայ ժամանակներու համար եղած այն մարգարէութեան մանաւանդ, որոյ կատարուիլը այսինքն քրիստոնէական կրօնի կռապաշտութեան յաղթանակը որ եղած է և պիտի ըլլայ, կը տեսնուի ամէն օր և ամէն տեղ:

Այս ամենէն ի՞նչ կը հաստատուի:

— Ահա այս երեք բովանդակութեամբ կը հաստատուի թէ այս Գիրք աստուածային է և ո՛չ մարդկային:

Աստուածաշունչին մէջ քանի՞ գիրք կայ:

— Վաթսուն և վեց գիրքեր, երեք դասի վերածուած: Ա. Պատմականներ, — Բ. Կրօնական և բարոյական ծէսեր և վարդապետութիւններ, — Գ. Մարգարէականներ:

Սուրբ Գրքին մեծագոյն ճշմարտութիւնն ի՞նչ է:

— Այս է թէ մէկ հատ Աստուած կայ, որ յայտնուած է երեք անձնաւորութեամբ, Հայր, Որդի և Սուրբ Հոգի:

Սուրբ Գիրքն ի՞նչպէս ընթեռնելու է:

— Խորին պատկառանօք, վասն զի Աստուծոյ բանն է այն, Աստուծոյ խօսքն է. ուստի

Աստուծոյ խօսքը լսելով պէտք է որ ամէն մարդ հնազանդի աստուածային հրամաններուն և զայնս գործադրէ ։

Սուրբ Գիրք փոփոխութիւն կրա՞ծ է ։

— Աշխարհիս մէջ ամէն տեղ ու ամէն ատեն թէ՛ Հրեաներն և թէ բոլոր Քրիստոնեայներն զայն անփոփոխ պահած են , հաւատալով թէ այդ գիրքն է պատգամ Աստուծոյ ։

Ի՞նչ է Հին և Նոր Կտակարաններուն նպատակն ու վախճանը ։

— Գրեթէ միեւնոյն է , վասն զի մէկ հաւատք կը հաստատեն , միայն թէ հինը՝ Հրէութիւնը կը կոչէ փրկութեան ։ Իսկ նորը՝ անխտրաբար ամբողջ մարդկութիւնը ։ Հինն՝ օրինօք կը կրթէ մարդը , իսկ նորը՝ շնորհօք և ճշմարտութեամբ . վերջապէս նորը հինին կատարելագործութիւնն է , կամ թէ հինը նորին մէջ բացայայտուած է ։

Սուրբ Գրքի ուսման ինքնին հմտանալ և հաւանիլ կարելի՞ է ։

— Որովհետեւ Սուրբ Գիրքին մէջ կան այնպիսի ճշմարտութիւններ , զորս ճշդիւ իմանալն ու լուծելը մարդկային մտքէն վեր է , անհնար , այլ սակայն որովհետեւ չեն երբէք

ընդդէմ մեր մտքին, գիտնալով թէ մեր իմաստութիւնն Աստուծոյ իմաստութեան հետ բաղդատմամբ յիմարութիւն է, հաւատով ընդունելու է զայն ։

Ինչո՞ւ մեր միտքին անհաս են այդ ճշմարտութիւնք ։

— Վասն զի մարդ իր Աստուծմէն տարբեր եղած ըլլալու համար պէտք է որ անորմէ նուազ գիտուն ըլլայ, և բնաւ իսկ գիտուն չըլլայ այն ամէն բաներուն մէջ մանաւանդ՝ որոց գիտութիւնը Աստուծոյ միայն յատուկ է ։

Սուրբ Գիրքն այդ մասին ի՞նչ կը պատուիրէ ։

— Կը հրամայէ այսպէս. «Ծածուկքն Տեառն Աստուծոյ մերում և յայտնիքն մեզ և որդւոց մերոց» (Բ. Օրինաց, ԻԹ. 20) ։ Ուրեմն ծածուկները Աստուծոյ թողլով՝ յայտնուածները միայն ընդունելը՝ բաւական է մեզ և շատ իսկ ։

Ուրեմն Սուրբ Գիրքն ընդունելու համար ի՞նչ պէտք է ։

— Սուրբ Գիրքն ամբողջապէս ընդունելու համար միայն հաւատք ունենալու է, վասն զի

Սուրբ Գրքէն քան մը , զոր մարդ ինքնին չկրնար իմանալ ու հաստատել , պէտք է որ զայն ընդունի անոնց վկայութեամբ՝ որք Աստուծմէ ներշնչուած են , այս է Հաւատքը ։

---

## ԴԱՍ Ե.

### ՀԱՒԱՏՔ

*Ո՞րպիսի հաւատք ունենալ պէտք է ։*

— Որովհետեւ հաւատքն է աղբիւր մեր երջանկութեան , ուստի ըլլալու է այն լուսաւոր , հեզ , հաստատուն , կենդանի և գործնական ։

*Հաւատքն ե՞րբ լուսաւոր է ։*

— Մարդ պէտք է որ ճանչէ , որոշէ և համոզուի այն ճշմարտութիւններուն , որոց վրայ հիմնուած է իր հաւատքը , վասն զի առանց ճանչելու , առանց քննելու և համոզուելու չկայ լուսաւոր հաւատք ․ մարդ մը չի կրնար « Տալ պատասխանի ամենայնի , որ խնդրիցէ զբան , որ է վասն յուսոյն իւրոյ » , եթէ տգէտ է ։

Ե՞րբ հաւատքն է հեզ ։

— Որովհետեւ մարդկային միտքն է տկար, ուրեմն երբ մարդ իր այս տկարութիւնն կը ճանչէ ու կը խոստովանի, յայնժամ կ'ընդունի թէ հաւատարիմ է Աստուած, և թէ նա զինքն ստեղծած է մի միայն երջանիկ ըլլալու համար ։

Ե՞րբ հաւատքն է հաստատուն ։

— Երբ մարդ չշեղիր այն մտածութիւններէն՝ զորս գիտէ թէ բարի են . չշեղիր ամբարիշտ մարդերու ծուռ դատողութեններէն ու օրինակէն, այլ անյողդողդ կը մնայ ամէն ատեն և ամէն դէպքի մէջ ։

Ե՞րբ հաւատքն է կենդանի ։

— Հաւատքն է կենդանի երբ մարդ կ'ընդունի թէ աստուածային ճշմարտութիւնները բարի են իր անձին և թէ՝ ուրիշներուն համար ։

Ե՞րբ հաւատքն է գործնական ։

— Երբ մարդ կը կատարէ այն ամէն պատուէրները, որք հրամայուած են Աստուծմէ ։

Հաւատքն ո՞ւստի կը ծագի մեր մէջ ։

— Սուրբ Հոգիէն, վասն զի «Թէ մեք ոչ զհոգի աշխարհիս այսորիկ առաք, այլ զՀոգին

որ յԱստուծոյ, զի ծանիցուք զայն որ յԱստուծոյն շնորհեցաւ մեզ։ Եւ զոր խօսիմքս, ոչ եթէ մարդկեղէն ուսմամբ ճարտարութեան բանից, այլ վարդապետութեամբ Հոգւոյն, ընդ հոգեւորս զհոգեւորսն համեմատեմք» (Ա. Կորնթ. Բ. 10-13)։

Առանց ներգործութեան Հոգւոյն Սրբոյ կարելի չէ՞ ճշմարիտ հաւատք ունենալ։

— Ո՛չ, վասն զի մեղքը զմեզ շատ հեռացուցած է Աստուծմէ, և թէ «Շնչաւոր մարդը ոչ ընդունի զՀոգւոյն Աստուծոյ, զի յիմարութիւն է նմա» (Ա. Կորնթ. Բ. 14)։

Ուրիշ ի՞նչ վկայութիւն կայ։

— Որովհետեւ մարդկային սիրտը ապականուած է չարութեամբ, ուստի չկրնար ինքնին սիրել և հնազանդիլ յայտնուած ճշմարտութիւններուն. «Խորհուրդ մարմնոյ թշնամութիւն է յԱստուած, զի օրինացն Աստուծոյ ո՛չ հնազանդի, նա և կարէ իսկ ոչ։ Զի որ մարմնոյն են, Աստուծոյ հաճոյ լինել ոչ կարեն»։ Ասոր համար է որ Սուրբ Հոգին՝ Սուրբ Գրքին մէջ «Հոգի Հաւատոյ» ալ կոչուած է (Բ. Կորնթ. Դ. 13)։

Ճշմարիտ հաւատոյ շնորհքն ի՞նչ է։

— Հաւատով կը ճանչենք զԱստուած և անոր կը հաճոյանանք ։ Հաւատքով Աստուծոյ որդի կ՚ըլլանք և չարին դէմ կը զօրանանք ։ Ի վերջոյ հաւատով կը բնակի Աստուած մեր մէջ , որ է կեանք և յաւիտենական երջանկութիւն ։

Միայն հաւատով կարելի՞ է արդարանալ և փրկուիլ ։

— Որովհետեւ մարդս լոկ հոգեւոր արարած չէ , այլ և մարմնաւոր , ուստի մեր ներքին հաւատոյն համեմատ մեր բարի գործերը պարտինք ցոյց տալ աշխարհի , որպէս գըրուած է . «Տեսցեն մարդիկ զգործս ձեր բարիս , և փառաւորեսցեն զՀայրն ձեր որ յերկինս է» ։ (Մատթ. Ե. 16) ։

Հաւատքն ի՞նչպէս գործով կը յայտնուի ։

— Հրապարակային խոստովանութեամբ և հնազանդութեամբ աստուածային պատուէրներուն ։

Հրապարակային խոստովանութիւնն ի՞նչ է ։

— Ինչ որ հաւատքով ընդունած ենք , ամէն ատեն և ամէն տեղ պարտաւոր ենք խոստովանիլ , ինչպէս Քրիստոս պատուիրուած է , թէ «Ամենայն որ խոստովա-

նեացի յիս առաջի մարդկան, խոստովանե-
ցայց և ես զնմանէ առաջի Հօրն իմոյ որ յեր-
կինս է» (Մատթ. Ժ. 18)։ Եւ Պօղոս առա-
քեալ առ Հռովմայեցիս կը գրէ. «Եթէ խոս-
տովանեսցես բերանով քով Տէր՝ զՅիսուս, և
հաւատասցես ի սրտի քում թէ Աստուած յա-
րոյց զնա ի մեռելոց, կեցցես» (Հռովմ. Ժ. Գ.)։
Այսպէս ամէն ժամանակ քրիստոնեայ ըլլա-
նիս խոստովանելու ենք։

Աստուածային պատուէրներու հնազանդու-
թիւնն ի՞նչ է։

— Սիրով կատարել Աստուծոյ պատուէրները
և ո՛չ թէ կեղծաւորութեամբ և սնոտի ակըն-
կալութեամբ, յիշելով միշտ սոյն խօսքը թէ
«Մի՛ գիտասցէ ձախ քո զինչ գործէ աջ քո, այլ
Հայրն քո երկնաւո՞ր որ տեսանէ ի ծածուկ,
հատուսցէ քեզ յայտնապէս» (Մատթ. Զ. 1-4)։

Առանց գործոց երբեք չկա՞յ փրկութիւն։

— Երբ մեր ներքին հաւատոյն համեմատ
գործելու միջոց և ժամանակ չենք ունենար,
այն ատեն լոկ հաւատքով փրկուիլ կարելի է,
ինչպէս տեսնուած է Քրիստոսի մօտ խաչուող
աւազակին և շատ սուրբերու վրայ։

---

# ԴԱՍ Զ.

## ՅՈՅՍ ԵՒ ՍԷՐ

*Հաւատքէն իսկոյն ի՞նչ կը ծնի ։*

*— Յոյս և սէր, վասն զի ան որ կը հաւատայ, կը յուսայ, և ով որ կը հաւատայ և կը յուսայ, կը սիրէ ։*

*Յոյսն ի՞նչ է ։*

*— Յոյսն է այն, որով մարդ միշտ իր անձին պահպանութիւնն ու խնամքն Աստուծոյ յանձնելով կ՚սփոփէ զինքը ։*

*Սէրն ի՞նչ է ։*

*— Սէրն է այն, որով մարդ ամրապինդ կը կապուի թէ՛ Աստուծոյ և թէ ուրիշներու հետ, Աստուծմէ բարիք խնդրելով և ուրիշներուն բարիք ընելով ։*

*Սէրն ունի՞ չափ ։*

*— Առ Աստուած սէրն է անչափ, իսկ առ մեր անձն և առ ուրիշներ՝ չափով ։*

*— Ո՞րն է այդ չափը ։*

*Աստուած դրած է այդ չափը. — «Սիրել*

զընկերն իբրեւ զանձն»։ Այս է արդարութիւնն, որ գծուած է Աստուծմէ. — Ինչ որ կ'ուզես որ ուրիշը քեզի ընէ, դուն ալ զայն ըրէ ուրիշին։

Առանց հաւատքի կարելի չէ՞ սէր և յոյս ունենալ։

— Ո՛չ, հետեւաբար և ոչ կրօնք, վասն զի կրօնը կը յայտնուի ի ձեռն հաւատոյ, յուսոյ և սիրոյ. առանց այս երեքին՝ չկայ կրօնք։

---

## ԴԱՍ Ե.

## ԿՐՕՆՔ

Կրօնն ի՞նչ է։

— Կրօնն է միութեան կապ ընդմէջ Աստուծոյ և մարդոյ։

Ի՞նչպէս։

— Վասն զի կրօնն է որ կը չափաւորէ մեր բաղձանքները, զսպելով մեր մեղսամէտ բնութիւնը, և զմեզ կ'ընէ աստուածահաճոյ։

Որո՞նք են այդ բաղձանքները։

— Առաջին, մարդ կը բաղձայ միշտ առողջ և երկար ապրիլ, ուստի միշտ ահ ու վախի մէջ է թէ մի գուցէ առողջութիւնը խանգարուի և մահը հասնի։

Կրօնն ի՞նչպէս կը զսպէ այդ բաղձանքը։

— Առողջ և երկար ապրելու համար կրօնը կը քարոզէ մեզ զգաստութեամբ ապրիլ, այսինքն ցոփութիւններէ, արբեցութենէ, ագահութենէ, և այս կարգի մոլութիւններէ զգուշանալ, որպէսզի չթուլնային մեր կեանքը և կանուխէն չվերջանայ։

Ո՞րն է միւս բաղձանքը։

— Երկրորդ, մարդ կը բաղձայ ունենալ ամէն բան և շատ ունենալ, ուստի միշտ ահ ու դողի մէջ է, թէ մի՛ գուցէ ինչ որ ունի կամ տակաւին կրնայ ունենալ, կորսուի, ու այլ եւս ունենալ չյաջողի։

Կրօնն ի՞նչպէս կը զսպէ այդ բաղձանքը։

— Կրօնը կը քարոզէ մեզ թէ ամէն բան ունենալ անհնար է, միայն թէ ինչ որ ունինք, զայն չափաւորութեամբ վայելելու է և խնամութեամբ աճեցնելու է, զգուշանալով միշտ անիրաւութիւն, զրկանք, զրպարտութիւն և

ուրիշ այս կարգի մեղքեր ընել է, որպէս զի տեղի չտայ ուրիշներու թշնամութիւններու և կամ պետական դատաստաններու ։

Կա՞յ ուրիշ բաղձանք ևս ։

— Երրորդ, մարդ կը բաղձայ գիտնալ ամէն բան և շատ գիտնալ, ուստի միշտ ահ ու դողի մէջ է թէ մի՛ գուցէ օր մը մտաթափ ըլլայ կամ ուրիշ մը գերազանցէ զինքը ։

Կրօնն այդ բաղձանքն ի՞նչպէս կը զսպէ ։

— Կրօնքը կը քարոզէ թէ անհնար է ամէն բան գիտնալ, միայն թէ ինչ որ մարդ գիտէ, զայն խոհեմութեամբ պահպանելու և ժրութեամբ աճեցնելու է, միշտ սնափառութենէ, իմաստակութենէ, նախանձոտութենէ և այս կարգի մոլեգնոտութիւններէ զգուշանալով ։

Իսկ կրօնն մեր մեղսամէտ բնութիւնն ի՞նչպէս կը զսպէ ։

— Մարդկային բնութիւնն որքան որ մեղսասէր է, այլ կրօնը զայն, որքան կարելի է, կը զսպէ ։

Ի՞նչպէս ։

— Մարդ ենթակայ ըլլալով կարիքի, կամքի և կիրքի, կ'ստիպուի մեղք գործելու, եթէ կրօնէն չարգիլուի ։

Կարիքէն ի՞նչպէս կ'ստիպուի մարդ մեղք գործելու։

— Մարդ ուտելու, խմելու, հագուելու և այսպիսի ուրիշ բնական պէտքեր ունի։ Կարիքէն մղուած մարդը զոր օրինակ, երբ անօթի է, կ'ուզէ որ քարերը հաց ըլլան այսինքն կ'սկսի դժգոհիլ Աստուածային Նախախնամութեան դէմ։

Կրօնն ի՞նչպէս կը զսպէ կարիքը։

— Կրօնը կը քարոզէ թէ Աստուած տուած է մարդուն ոյժ, զոր գործածելով կրնայ քարերն անգամ հաց ընել այսինքն աշխատութեամբ ճարել ինչ որ պէտք է։

Կամքէն ի՞նչպէս կ'ստիպուի մարդ մեղք գործելու։

— Մարդկային կամքը չափ չունի գոհ ըլլալու, այնպէս որ հարստութիւն և կամ փառք և իշխանութիւն եւայլն ստանալու համար կ'ստիպէ մարդուն ամենէն ահաւոր մեղքն անգամ գործել այսինքն մինչեւ իսկ զԱստուած ուրանալով երկրպագել սատանայի։

Կրօնն ի՞նչպէս կը զսպէ կամքը։

— Կրօնը կը քարոզէ թէ Աստուած մարդուն տուած է խելք, զոր գործածելով կըր-

նայ չնորհօքն Աստուծոյ հարստութեան, իշխանութեան և փառքի տէր ըլլալ, ուրեմն պէտք չկայ սատանայական՝ այսինքն մեղապարտ միջոցներ հնարելու և գործադրելու։

Կիրքէն ի՞նչպէս կը ստիպուի մարդ մեղք գործելու։

— Մարդ երբ իր մէկ վատ դիտաւորութեան կամ նպատակին չհասնիր, կիրքէն կը ստիպուի ամէն բան խորտակելու և կամ անկարելին կարելի ընելու մոլեգնութիւնն ունենալու։

Կրօնն ի՞նչպէս կը զսպէ կիրքը։

— Կրօնը կը քարոզէ թէ Աստուած մարդուն տուած է խիղճ, զոր գործածելով կրնայ գիտնալ թէ իր անձին կամ ուրիշին վնասելու և կամ անկարելին կարելի ընելու մոլեգնութիւնն զԱստուած փորձել կամ զրգռել է անոր բարկութիւնը։

Այս ամենէն ի՞նչ կը հետեւի։

— Այս ամենէն կը հետեւի թէ կրօնի ազդեցութիւնն է յոյժ բարերար, որոյ չնորհը կը փայլէ մարդ աղօթելով և խնդրանք ընելով Աստուծոյ։

---

# ԴԱՍ Ը.

## ԱՂՕԹՔ

*Ուրեմն կրօնի շնորհքն ի՞նչպէս կը յայտնուի ։*

*— Աղօթքով. վասն զի ով որ կը հաւատայ և կը յուսայ Աստուծոյ և զանի կը սիրէ, կ'աղօթէ ։*

*Աղօթքն ի՞նչ է ։*

*— Փառաբանութիւն և գոհութիւն առ Աստուած և խնդրուածներ ։*

*ԶԱստուած ինչո՞ւ փառաբանելու է ։*

*— Փառաբանելով զԱստուած մարդ կը խոստովանի Աստուծոյ ահաւոր զօրութիւնն ու անհուն բարութիւնը, որով աշխարհս ու զմեզ ստեղծած է և կը պահպանէ ։*

*Աստուծմէ ինչո՞ւ գոհանալու է ։*

*— Աստուծմէ գոհանալով մարդ կը խոստովանի թէ այն ամէն բարիք մանաւանդ առողջութիւն, իմաստութիւն և յաջողութիւններ, զորս կը վայելէ, Աստուծմէ ձրի շնորհք են ։*

Ի՞նչ խնդրուածներ ունի մարդ Աստուծոյ։

— Շատ են, այլ առաւել եւս մարդ խընդրելու է Աստուծոյ արքայութիւնը և անոր արդարութիւնն ու խնամածութիւնը։

Ե՞րբ աղօթելու ենք։

— Աղօթելու ենք ամէն ատեն և ամէն տեղ անձանձրոյթ և ջերմեռանդ, հաւատալով թէ Աստուած միշտ կը լսէ մեզ։

Ջերմեռանդութեամբ ի՞նչպէս։

— Մեր աղօթքն է ջերմեռանդութեամբ, երբ մեր միտքն է ամփոփ, զերծ աշխարհային ո՛ եւ է մտածումներէ և մեր հոգւոյն աչերն յԱստուած միայն սեւեռած են։

Աստուած չգիտէ՞ր մեր պէտքերը։

— Թէեւ Աստուած գիտէ թէ ի՛նչ հոգեկան և մարմնական պէտքեր կան մեզ, այլ սակայն մարդ ցոյց տալու համար իր խոնարհ համարձակութիւնը՝ աղօթելով զայնս խնդրելու է Աստուծմէ։

Ինչո՞ւ Աստուած մեր խնդրուածներն իսկոյն չկատարեր։

— Վասն զի ինչ որ պիտի տայ Աստուած, շնորհք է այն. և ինչ կը խնդրենք Աստուծմէ,

աղաչելով կը խնդրենք, ոչ թէ հրաման տալով, ուստի Աստուած գիտէ թէ ե՛րբ մեզ լսելու և կատարելու է մեր ո՛ և է մէկ խնդրուածը։

Միայն մեր անձի՞ն համար աղօթելու ենք։

— Ո՛չ, այլ և աղօթելու ենք մեր ընտանիքին, մեր ընկերներուն, կրօնական և պետական իշխանութեանց և բոլոր աշխարհի և մեր թշնամիներուն համար անգամ։

Աստուա՞ծ տուած է մեզ աղօթելու օրինակ։

— Այո՛, և այս աղօթքը կ'ըսուի «Տէրունական» որ է. «Հայր մեր որ յերկինս՝ սուրբ եղիցի անուն քո։ Եկեսցէ արքայութիւն քո։ Եղիցին կամք քո, որպէս յերկինս և յերկրի։ Զհաց մեր հանապազորդ՝ տուր մեզ այսօր. Թող մեզ զպարտիս մեր, որպէս և մեք թողումք մերոց պարտապանաց։ Եւ մի՛ տանիր զմեզ ի փորձութիւն, այլ փրկեա ի չարէ։ Զի քո է արքայութիւն և զօրութիւն և փառք յաւիտեանս. ամէն»։

Տէրունական այդ աղօթքին մէջ քանի՞ բովանդակութիւն կայ։

— Երկու. մին՝ որ Աստուծոյ կը վերաբերի և միւսը՝ մեզ։

Ո՞րն է Աստուծոյ վերաբերածը ։

— Թէ Աստուած մը կայ որ ՀԱՅՐ է մեզ , որով և մենք իրարու ենք եղբայր ։

Թէ անոր անունը սուրբ պահելու է մեր անձին սրբութեամբ ։

Թէ անոր արքայութեան փափաքող ենք , անոր կամքին հնազանդելով ։

Ո՞րն է մեզ վերաբերածը ։

— Թէ Աստուած է մեր ապրուստը հոգացողը ։

Թէ ան ներող է մեզ , թէ որ մենք իրարու ներող ու գթացող ըլլանք ։

Թէ զմեզ փորձութեան չտանիր , այլ զմեզ չարէն փրկող է ։

Աղօթելու որոշ ժամանակներ չկա՞ն ։

— Ամէն առաւօտ ծոմ բերնով լուացուելէ յետոյ , գիշերը ննջելէ առաջ , հաց ուտելէ առաջ և յետոյ , առանձինն կամ հաւաքաբար . այս է առտնին աղօթքը ։

Ուրիշ ո՞ւր աղօթելու է ։

— Ժամ երթալով ամէն օր մանաւանդ կիրակի և տօն օրերը և մասնակցիլ հրապարակային աղօթքներուն ժողովրդեան հետ , վասն զի հոն որ «Տուն աղօթից» կը կոչուի , կը

միանան մեր սիրտերն իրարու հետ, ուր շնորհք և ճշմարտութիւն լսելով կ'ըլլանք ճըշմարիտ քրիստոնեայ։

Ի՞նչպէս աղօթելու է։

— Հաւատալով թէ մարդ Աստուծոյ կը ներկայանայ, ուստի խորին ակնածութեամբ և խոնարհութեամբ, կամաւ և սրբութեամբ ու ջերմեռանդութեամբ աղօթելու է։

Ակնածութեամբ ի՞նչպէս կ'ըլլայ։

— Մեր աղօթքն յայնժամ է ակնածութեամբ, երբ է բաց գլխով, մերթ բազկատարած և մերթ ծնրադիր ու մերթ կանգնած. և եթէ առանձնական է մեր աղօթքը, լռին ըլլալու է. իսկ եթէ ժամերգութեանց մասնակցելով է, մրմնջելով՝ այսինքն շատ մեղմաձայն ըլլալու է։

Խոնարհութեամբ ի՞նչպէս։

— Մեր աղօթքն է յայնժամ խոնարհութեամբ, երբ ժամէն ներս մտած ատեն ոտնամանի ձայն հանելէ, աղօթաւորները հըրմշտկելէ, բարեւ տալէ և կամ խօսակցելէ, հովանեակ կամ գաւազան կրելէ, հպարտ քալուածք և յախուռն կեցուածք և յայրատ նայուածք ունենալէ կ'զգուշանանք։

Կամաւ ի՞նչպէս ։

— Մեր աղօթքն է յայնժամ կամաւ, երբ է խնդրայօժար, ոչ թէ ուրիշներէ ստիպուած, կամ թէ որ ամենէն աւելի պախարակելին է, զինքը ուրիշներուն ցոյց տալու և հաճելի ըլլալու, և կամ կեղծաւորելու վատ դիտաւորութեամբ է ։

Սրբութեամբ ի՞նչպէս ։

— Մեր աղօթքն է յայնժամ սրբութեամբ, երբ է զղջումով, այսինքն ճանչնելով մեր մեղքերուն չափը և վախնալով Աստուծոյ բարկութենէն, կը հայցենք Աստուծմէ թողութիւն մեղաց և սրբութիւն մեր անձին ։

Սրբութեամբ աղօթելու ուրիշ կերպ ալ կա՞յ ։

— Այո՛, մեր անձին հոգեւոր սրբութեան պէտքը գիտնալով, մեր արտաքին դիրքին սրբութիւնն ալ պէտք է այսինքն մաքուր հագուած և յարդարուած, ոչ թէ հին ու կեղտոտ հագուստով և աղտոտ երեսով և ձեռներով եւսյլն աղօթելու ենք ։

Աղօթքով մարդ ի՞նչ կ'զգայ ։

— Որքան որ մարդ կը հաւատայ թէ աղօթքով Աստուծմէ ամէն բան կ'առնու, այնքան աւելի կը յուսայ երջանկութեան հասնելու, այսինքն կրօնի բուն նպատակին ։

# ԴԱՍ Թ.

## ԵՐՋԱՆԿՈՒԹԻՒՆ

Աշխարհի մէջ մարդուս կարելի՞ է երջանիկ ըլլալ։

— Ո՛չ, վասն զի մարդ ունի այնպիսի փափաքներ, որք անհնար են թէ կատարուին աշխարհիս մէջ։

Ի՞նչ փափաքներ են։

— Առաջին, մարդ կը փափաքի որ ոչ թէ միայն առողջ ապրի, այլ միշտ ապրի։ Չկայ մարդ մը որ հիւանդութենէ մը կամ ախտէ մը չդժգոհի. առողջ կ'ուզէ ապրիլ, այլ սակայն ենթակայ է ցաւերու և ախտերու։

Ուրիշ ի՞նչ փափաք ունի մարդ։

— Երկրորդ, մարդ կ'ուզէ որ ամէն բան գիտնայ և միշտ դժգոհ է իր տգիտութենէն. երբէք մարդկային միտքը գիտութենէն կշտացած չէ, կը փափաքի միշտ աւելի գիտնալ, այլ սակայն ի զուր։

Եւ ուրիշ ի՞նչ փափաք ունի մարդ։

— Երրորդ, մարդ կ'ուզէ ամէն բան վայելել, այսինքն ունենալ ամէն տեսակ դիւրութիւններ գտնելու և վայելելու համար հարստութիւններ և փառք, այլ որքան աշխատի զայնս ստանալու և վայելելու, սակայն ի զուր։

Ինչո՞ւ։

— Վասն զի հարստութիւններն ու փառք կարելի են կորսուիլ կամ յափշտակուիլ, զի փորձութիւններ կան աշխարհիս մէջ, որոնցմէ անհնար է մարդուս զերծ մնալ։

Ի՞նչ է մարդուն ամենամեծ փափաքը։

— Մարդ որքան ալ առողջ, գիտուն և հարուստ ըլլայ և փառաւոր, այլ երբէք չուզեր մեռնիլ։ Մարդկային կեանքը որչափ որ երջանկութեան մէջ ըլլայ, արժանի չէ երջանիկ կոչուելու, քանի որ վերջ ունի։

Այս ամենէն ի՞նչ կը հետեւի։

— Կը հետեւի թէ մարդ առողջ ապրելու, ամէն բան գիտնալու, և վայելելու ու միշտ ապրելու այսինքն երջանկութեան համն առած է երբեմն։

Եւ այդ ինչէ՞ն յայտնի է։

— Քանի որ մարդ անհուն փափաքով երջանկութեան կը ձգտի, ուրեմն զայն կորուսած է, յանցանք մը կամ մեղք մը գործած ըլլալուն համար ։

Ինչո՞ւ մարդ առաջին անգամ մեղք ունեցաւ ։

— Մարդ թէեւ երջանիկ ստեղծուած ու օժտուած էր գերագոյն շնորհօք, այլ սակայն ունենալու էր բան մ'ալ, որ զինքն Արարչէն տարբերէր ։ Աստուածային հրաման մը կամ պայման մը պիտի յիշեցնէր մարդուն թէ ինքն է արարած, հպատակ է իրմէ վեր մէկու մը, Աստուծոյ ։

Ի՞նչ էր այդ պայմանը ։

— Մարդն արգիլուելու էր, կամ աւելի ճիշդն է, զրկուելու էր բանէ մը, որպէս զի կապուէր Աստուծոյ հետ երկիւղախառն սիրով (Ծննդ. Բ. 16-17) ։

Ի՞նչ պիտի ըլլար այդ արգելքին հետեւանքը ։

— Եթէ մարդ այս կապը խզէր, այսինքն դադրէր երկիւղէ և սէրէ, պիտի կրէր իր այս մեղքին պատիժը, մահը, քանի որ աստուածային բնութեան մէկ հանգամանքն էր արդարութիւնը ։

Եղա՞ւ այդ։

— Այո՛, վասն զի Մարդ աստուածային պատուէրն ու հրամանն արհամարհելով մեղք գործեց, անհնազանդութեան մեղքը։

Ի՞նչպէս։

— Մարդն աստուածատուր արգելքն արհամարհելով Աստուած ըլլալ ուզեց, ուստի պատժուեցաւ (Ծննդ. Գ. 4-7)։

Ի՞նչ էր պատիժը։

— Մահ. այլ որովհետեւ աստուածային բնութեան միւս հանգամանքն էր գթութիւնը, ուստի Մարդն առաւ այս աւետիսը, թէ այն երջանկութիւնը, որոյ համն առած էր, պիտի ստանայ վերստին։

Ի՞նչ էր այդ աւետիսը։

— Մարդ՝ որ Աստուած ըլլալ ուզելուն համար պատժուեցաւ մահուան ենթարկուելով, լսեց Աստուծմէ թէ ինքն Աստուած Մարդ պիտի ըլլար, Աստուած ընելու համար մարդը, այսինքն խոստացաւ Մարդ ըլլալով, տալ մարդուն յաւիտենական կեանք ու փառք, այսինքն այն երջանկութիւնը զոր կորուսած էր մարդ։

# ԴԱՍ Ժ.

## ՆԱՀԱՊԵՏՔ

Աստուած ո՞ւր և ե՞րբ տուաւ մարդուն այդ աւետիսը ։

— Դրախտին մէջ, ուր առաջին մարդն՝ Ադամ և առաջին կինն՝ Եւա իրենց ստեղծուելէն յետոյ դրուեցան, որպէս զի զայն գործեն ու պահեն ։

Ի՞նչպէս ատոնք ստեղծուեցան ։

— Ադամ հողէն ստեղծուեցաւ և առաւ Աստուծոյ շունչը, որով եղաւ «հոգի կենդանի»։

Ի՞նչ ըսել է հոգի կենդանի ։

— Այսինքն Ադամ ստեղծուեցաւ Աստուծոյ նմանութեամբը, որով յաւիտեան ապրելու և երջանիկ ըլլալու շնորհք առաւ Աստուծմէ ։

Եւա ի՞նչպէս ստեղծուեցաւ ։

— Եւա ստեղծուեցաւ Ադամի կողէն, որով ինչ որ ունէր Ադամ, Եւա եւս ունեցաւ ։

Ինչո՞ւ զրկուեցան դրախտէն ։

— Վասն զի հնազանդութիւնը՝ որով միայն Աստուծոյ հետ անոնք կապուած էին, արհամարհեցին, Աստուած ըլլալու սին փառասիրութեամբ։

Ի՞նչ եղաւ յետոյ։

— Երբոր որ այդ մեղքը գործեցին, և դրախտէն արտաքսուեցան, այլ սակայն աստուածային գթութիւնը տուաւ նոցա սա մխիթարութիւնը թէ նոքա իրենց ստեղծման բուն նպատակին այսինքն երջանկութեան պիտի հասնէին ձեռամբ այն զաւակին՝ որ պիտի ծնէր Եւայէն (Ծննդ. Գ. 15)։

Նախածնողք այդ աւետիսն որո՞նց աւանդեցին։

— Իրենց զաւակաց, որոցմէ Կայէն և Աբէլ զոհ ըրին Աստուծոյ, որ օրհնեց Աբէլը ուղիղ սրտով զոհ ըրած ըլլալուն համար։ Այսպէս Աստուծոյ աւետիսն աւանդաբար հասաւ մինչեւ Նոյ նահապետին։

Ո՞վ էր Նոյ։

— Սեթայ սերունդէն էր, արդար մարդ, որուն Աստուած հրաման ըրաւ տապան մը շինել և հոն մտնել ինքն ու իր կինը, զաւակներն ու հարսերը։

Ինչո՞ւ Աստուած հրամայեց որ տապան շինուի ։

— Վասն զի մարդիկ իրենց ամէն տեսակ անօրէնութեանց և մեղաց երեսէն գրգռեցին զԱստուած, ուստի ջրհեղեղով պատժուեցան ։ Քառասուն օրուան ու քառասուն գիշերուան մէջ ջրհեղեղը մարդ և անասուն, ամէն բան փճացուց, տապանին մէջ եղող մարդերէն ու անասուններէն զատ ։

Տապանն ինչի՞ օրինակ էր ։

— Տապանն էր օրինակ այն եկեղեցիին որոյ մէջ պիտի ապաստանէին այն ամէն մարդիկ, որք պիտի հաւատային թէ Աստուած մը կայ և պիտի ընդունէին փրկութեան աւետիսը ։

Տապանն ո՞ւր իջաւ ։

— Արարատ լերան վրայ, ուր Նոյ Աստուծոյ բարկատարած աղօթեց և զոհեց, և մարդկութիւնն ու աշխարհս վերստին օրհնուեցան Աստուծմէ ։

Նոյէն յետոյ մարդկային վիճակն ի՞նչ եղաւ ։

— Մարդիկ հետզհետէ շատնալով և ցրուելով դէս ու դէն, մոլորեցան և մոռցան ճըշ-

մարիտ Աստուածը և սկսան կռապաշտութեան հետեւիլ։

Ի՞նչ էր կռապաշտութիւնը ։

— Կռապաշտութիւնն էր մէկ Աստուծոյ տեղ շատ մը աստուածներու հաւատալ, և անոնց արձանները կամ պատկերները պաշտել որոնք կուռք կ'ըսուէին, թո՛ղ որ կային արեւ, լուսին, կրակ, անասուն եւայլն պաշտողներ ։

Աստուած թողո՞ւց որ բովանդակ մարդկութիւն այս անարգ վիճակին մէջ մնայ ։

— Ո՛չ, այլ որպէս զի մարդկային փրկութեան աւետիսը, այս թանկագին աւանդը չկորսուի, Աստուած Նոյի որդի՝ Սեմայ ցեղէն Աբրահամը ընտրեց, որ միակ աստուածապաշտն էր յայնժամ։

Աբրահամու ի՞նչպէս յայտնուեցաւ փրկութեան խորհուրդը ։

— Աստուած հրամայեց Աբրահամին որ իր մէկ հատիկ զաւակը՝ Իսահակը զոհ ընէ, և երբ Աբրահամ հնազանդեցաւ, Աստուած չթողուց և զոհի համար խոյ մը ցոյց տուաւ ։ Այսպէս Իսահակ եղաւ օրինակ այն զոհին, որ պիտի ըլլար ճշմարիտ զոհ փրկութեան ։

Աբրահամէն յետոյ այդ աւանդն ի՞նչպէս պահպանուեցաւ ։

— Աբրահամ զայն աւանդեց Իսահակայ, որ ունեցաւ երկու զաւակ՝ Եսաւ եւ Յակոբ ։ Յակոբ որ կրտսեր էր ; հօրը օրհնութիւնն առաւ իբր անդրանիկ զաւակ, և եղաւ օրինակ թէ նոր ժողովուրդ մը՝ Քրիստոնեայք, հին ժողովրդեան մը՝ Հրէութեան պիտի յաջորդէր և ժառանգ պիտի ըլլար Աստուծոյ արքայութեան ։

Իսահակէն յետոյ որո՞ւ աւանդուեցաւ ։

— Յակոբին, որ տեսիլքին մէջ տեսաւ սանդուխ մը, որոյ մէկ ծայրն երկինքն էր, և միւս ծայրն երկիրս էր, և որոյ ի վերեւ Աստուած նստած էր, և հրեշտակները կ'ելլէին ու կ'իջնէին և մարդիկ կ'ելլէին. այս էր օրինակ թէ Աստուած պիտի կոչէր իր հաւատացեալներն ի յերկին ։

Յակոբ ի՞նչ նշանաւոր մարգարէութիւն ըրաւ ։

— Յակոբ մարգարէացաւ թէ փրկութեան խորհուրդը պիտի կատարուի ձեռամբ այն զաւակին, որ պիտի սերէր իր Յուդայ զաւակի ցեղէն ըսելով. «Ի շառաւիղ է եկեր որդեակ իմ» ։

Յակոբէն յետոյ որո՞ւ տրուեցաւ փրկութեան աւանդը ։

— Յակոբայ տասներկու զաւակներուն, որոց մէջէն Յովսէփ գերի եղաւ Եգիպտոսի մէջ և յետոյ փառաւորեցաւ. այս էր օրինակ թէ Աստուած պիտի փառաւորէր իր հաւատացեալ ժողովուրդը, փրկելով մեղաց գերութենէն ։

Յակոբայ այս զաւակներէն ո՞ր ազգը սերեցաւ ։

— Իսրայելեան այսինքն Հրէայ ազգը, որ Աստուծոյ ամէն շնորհքները վայելեց, ունենալով մարգարէներ ։

Ո՞րն էր մարգարէներուն առաջինը ։

— Մովսէս, որ Իսրայելը ազատեց Եգիպտոսի գերութենէն մեծամեծ հրաշքներ գործելով և Կարմիր ծովը պատռելով՝ առաջնորդեց Իսրայելի և տարաւ այն երկիրը, զոր Աստուած Իսրայելի տալ խոստացած էր, երկիր մը որ կաթ ու մեղր կը բղխէր. այս էր օրինակ թէ Աստուած իր սեպհական ժողովրդեան պիտի տար նոր երկիր մը, ուր կեանքն ու փառք պիտի ըլլան յաւիտեան ։

Հրէայք իրենց Եգիպտոսէ ելլելուն յիշատակը ի՞նչպէս պահեցին։

— Աստուած հրամայեց որ անոնք իրենց Եգիպտոսէն ելլելու նախորդ գիշերուան մէջ ոչխար խորովեն և ուտեն, և գառին արիւնը քսեն իրենց տուներուն ճակատը, որպէս զի անպատիժ մնային անդրանիկ զաւակներու կոտորածէն, որ պիտի ըլլար Եգիպտացիներուն։ Այս գառն ուտելու տօնը ըսուեցաւ Զատիկ։

Ի՞նչ նշան էին գառը և գառին արիւնն ու Զատիկը։

— Գառն էր օրինակ այն զոհին, որուն արիւնով պիտի փրկուէր մարդկութիւնը, այսինքն պիտի ազատուէր այլ ևս գերի ըլլալէ, գերի՛ մահուան։

Յայնժամ Աստուած ուրիշ ի՞նչ կերպով յայտնեց իր կամքը։

— Որովհետև անհնար էր այլ ևս իր ժողովրդեան առանց գրաւոր օրէնքներու աստուածային կամքին համաձայն կենցաղ ունենալ, ուստի Աստուած տուաւ Մովսէսի, քարէ տախտակներու վրայ գրուած տասն պատուէրներ, որք ըսուեցան Տասնաբանեայ օրէնք։

Որո՞նք են այդ տասն պատուէրները ։

1. — Ես եմ Տէր Աստուած քո. մի՛ եղիցին քեզ այլ Աստուածք բաց յինէն ։
2. — Մի՛ արասցես քեզ կուռս ։
3. — Մի՛ առնուցուս զանուն Տեառն Աստուծոյ քո ի վերայ սնոտեաց ։
4. — Յիշեսջի՛ր զօրն շաբաթու սրբել զնա ։
5. — Պատուեա՛ զհայր քո և զմայր ։
6. — Մի՛ սպանաներ ։
7. — Մի՛ շնար ։
8. — Մի՛ գողանար ։
9. — Մի՛ սուտ վկայեր զընկերէ քումմէ ։
10. — Մի՛ ցանկանար տան ընկերի քո, և մի՛ ամենայնի զինչ ընկերին քո իցէ ։

---

## ԴԱՍ ԺԱ.

## ԱՍՏՈՒԱԾԱՊԱՇՏՈՒԹԻՒՆ

Առաջին պատուէրով Աստուած ի՞նչ կը հրամայէ մեզ ։

— Կը հրամայէ թէ մէկ հատ Աստուած կայ, և անկէ զատ ուրիշ Աստուած չկայ ։

Այս պատուէրէն ի՞նչ կը հետեւի ։

— Այս պատուէրէն կը հետեւի թէ ունենալու է առ Աստուած պատիւ, երկիւղ և վստահութիւն ։

Ո՞րպէս կարելի է ունենալ պատիւ առ Աստուած ։

— Այնքան խորին պատիւ տալ մեզ պէտք է Աստուծոյ, որով յայտնուի մեր այս հաւատքը թէ Աստուած է մեր տէրն ու բարերարը, և այս պատիւը Աստուծոյ տալով՝ մեր անկեղծ երախտագիտութիւնն ալ յայտնուի ։

Մեր այս պատիւներն ի՞նչպէս առ Աստուած կը յայտնուին ։

— Աղօթքով միայն. մարդկային սրտի շնորհապարտութեան մրմունջը, որ կը բարձրանայ առ Աստուած, նշան է թէ մարդն է միշտ կարօտ աստուածային գթութեան և հետեւաբար միշտ երախտապարտ ։

Ո՞րպէս կարելի է ունենալ երկիւղ առ Աստուած ։

— Այնքան խորին երկիւղ ունենալու ենք առ Աստուած, որով յայտնուի թէ աստուածային ամենակարող զօրութիւնը որ մարդուն

տուած է կեանք, կարող է մէկ ակնթարթի մէջ փճացնել զայն, եթէ մարդ չհաւատայ թէ Աստուած է իր տէրն ու թագաւորն և չկայ ուրիշ Աստուած մը անորմէ զատ։

Եւ ի՞նչպէս կարելի է ունենալ վստահութիւն առ Աստուած։

— Մարդ հաւատալու է թէ Աստուած երբէք զինքը չէ ստեղծած որ ըլլայ թշուառ, այլ ընդհակառակն նախասահմանած է որ ըլլայ երջանիկ։ Աստուածային բարութիւնն այնքան ստոյգ է որ ինչ խոստում որ տուած է մարդուն երջանկութեան համար, անհնար է որ այդ խոստումը չկատարուի։

Այս առաջին պատուէրով ուրեմն ի՞նչ գիտնալ պէտք է։

— Գիտնալ պէտք է թէ մէկ հատ Աստուած կայ, որոյ երկրպագելու ենք հոգւով և ճշմարտութեամբ, և անոր աստուածային խօսքերուն համաձայն, եթէ բարի և բարեբար ապրինք, արժանի կ՚ըլլանք յաւիտենական երջանկութեան։

# ԴԱՍ ԺԹ.

## ԿՌԱՊԱՇՏՈՒԹԻՒՆ

*Երկրորդ պատուիրանով ի՞նչ կը հրամայէ Աստուած ։*

— Կը հրամայէ չշինել կուռք, այսինքն կռապաշտութիւն չընել ։

*Ի՞նչու արգիլուած է կռապաշտութիւնը ։*

— Վասն զի Աստուծոյ փառքն ու պատիւը տալ անբան կամ անշունչ արարածներու ծայրագոյն մեղք է ։ Չկայ առ Աստուած այնքան աւելի մեղք մը որքան կռապաշտութիւնը ։

*Այս մասին Աստուած ի՞նչ խօսած է ։*

— Բացէ ի բաց խօսած է. «Զփառս իմ այլում ոչ տաց»։ Եւ թէ շատ անգամ Աստուած յայտնած է թէ վրէժխնդիր պիտի ըլլայ անոնց՝ որք իր փառքը իրմէ զատ ուրիշ ո՛ և է մէկու մը կուտան ։

*Ուրիշ ի՞նչ տեսակ կռապաշտութիւն կայ ։*

— Մարդ երբ իր սիրտը բոլորովին կը կապէ մոլութիւններու և մեղքերու մանաւանդ սնոտի փառաց, կռապաշտութիւն ըրած կ՚ըլլայ ։

Խաչի և պատկերներու ինչո՞ւ յարգ կ՚ընծայուի ։

— Խաչն ու պատկերները երբէք չեն պաշտուիր, այլ կը յարգուին, վասն զի կը յիշեցընեն մեզ Քրիստոսի և սուրբերուն նահատակութիւնն և անոնց բարերար ծառայութիւններն առ մարդիկ ։

Առ սուրբս աղօթելը մեղք չէ՞ ։

— Ո՛չ, վասն զի սուրբերն երկնքի մէջ կենդանի են հրեշտակներու նման, և անոնց բարեխօսութիւնն առ Աստուած ստոյգ է ամենուս համար (Մատթ. ԺԸ. 10 ։ Ղուկ. ԺԳ. 6-10) ։

Սուրբերն ունի՞ն զօրութիւն շնորհք տալու մեզ ։

— Ամենեւին. Աստուած միայն կուտայ մեզ շնորհք և բարութիւն, միայն թէ սուրբերէն եւս Աստուծով կ՚ընդունինք ինչ որ Աստուծմէ կ՚ակնկալենք ։

Սուրբերուն նշխարները կամ մասունքները ինչո՞ւ կը յարգուին ։

— Վասն զի «Մարմինք նոցա եղեն տաճար Հոգւոյն սրբոյ» ։ Աստուած այնքան կը սիրէ սուրբերը, որ անոնց նշխարներուն ալ հրաշագործութեան շնորհք կուտայ (Դ. Թագ. ԺԳ. 21-22) ։

Այդ երկրորդ պատուէրով Աստուած ուրիշ ի՞նչ բան կ'արգելու ։

— Կ'արգելու աւելորդապաշտութիւնը այսինքն կախարդներու, բաղդ նայողներու և վհուկներու դիմելը, զոր անէծքով արգիլած է Աստուած ։

Երկրորդ պատուէրով ուրեմն ի՞նչ գիտնալ պէտք է ։

— Գիտնալ պէտք է թէ մեծագոյն մեղք են կրօնքն և Աստուծոյ հրամաններն արհամարհելը. վերջապէս ճշմարիտ զԱստուածը ուրիշի փոխանակելը կամ ուրանալն է անհնարին ամբարշտութիւն ։

---

## ԴԱՍ ԺԴ.

## ԵՐԴՈՒՄ

Երրորդ պատուէրով Աստուած ի՞նչ կը հրամայէ ։

— Աստուծոյ անունը պարապ տեղը բերան չառնուլ, այսինքն սուտ երդում չընել ։

Ի՞նչ ըսել է պարապ տեղը երդնուլը ։

— Երբ մարդ Աստուծոյ ահաւոր անունը վկայ կը կոչէ սուտ ու անարգ և շատ անգամ թեթեւ բաներու համար, յայնժամ կը մեղանչէ այս պատուէրին դէմ։

Ուրեմն երդումն ի՞նչ է։

— Վկայ ընել զԱստուած մեր խօսքին ճշմարտութեանը համար, և յայտարարել թէ Աստուծմէ պատրաստ ենք պատիժ կրելու, եթէ ճշմարիտ չէ մեր խօսքը, և կամ եթէ չկատարենք մեր խոստումը։

Արգիլուած չէ՞ երդումը։

— Սուրբ Աւետարանը բացարձակապէս կ'արգելու երդնուլը, բայց կարելի է եթէ ակամայ կամ իշխանութենէ մը բռնադատութեամբ ըլլայ։

Քանի՞ տեսակ սուտ երդումներ կան։

— Շատ տեսակ կան, որոց գլխաւորներն են, առաջին՝ սուտը իբր ճշմարիտ հաստատել կամ ճշմարտութիւնը ամբողջ չըսել։

Երկրորդն ո՞րն է։

— Երկրորդն է երդնուլ կամ ուխտել առանց դիտաւորութիւն ունենալու զայն յետոյ կատարելու համար։

Ամենէն ծանր երդումն ո՞րն է։

— Աստուծոյ անունով երդում ընելն է չար բան մը ընելու համար ։

Թեթեւ երդումն ո՞րն է ։

— Սնոտի բանի մը համար յաճախ Աստուած վկայ ընել, կամ սուրբերը եւ կամ սուրբ խաչը եւ կամ ուրիշ նուիրական սրբութիւններ յիշել ։

Երդում ընելու մոլութենէն ի՞նչպէս կարելի է ազատիլ ։

— Մտածելով Աստուծոյ անուան ահեղ մեծութիւնը, եւ յիշելով՝ թէ Աստուած վրէժխնդիր է միշտ այնպիսիներու, որք իր սուրբ անունը կ՚արհամարհեն, կարելի է երդում ընելու մոլութենէն զերծ ըլլալ ։

---

## ԴԱՍ ԺԴ.

### ՇԱԲԱԹ

Չորրորդ պատուէրով Աստուած ի՞նչ կը հրամայէ ։

— Կը հրամայէ շաբաթ օրը, որ հանգիստ կը նշանակէ, սուրբ պահել ։

Ի՞նչ ըսել է սուրբ պահել ։

— Այդ օրը հանգչիլ ամէն աշխատութենէ, և իբր նուիրական օր յիշել Աստուծոյ աշխարհս և զմեզ ստեղծելուն ամենամեծ շնորհը։

Ե՞րբ այս օրէնքը Աստուած հրամայեց։

— Եօթներորդ օրը սուրբ պահելու հրամանն յիշատակեցաւ դրախտին մէջ առաջին անգամ, և մարդիկ ամէն տեղ աւանդութեամբ պահեցին զայն, կամ գոնէ շաբթուան մէկ օրը սուրբ պահեցին։

Քրիստոնեայք ինչո՞ւ շաբաթը չեն պահեր այժմ։

— Վասն զի Առաքեալք Քրիստոսի յարութեան յիշատակը նուիրական ընելու համար շաբաթը փոխեցին և շաբթուան առաջին օրը սուրբ պահել հրամայեցին, որ և կոչուեցաւ Տէրունական օր կամ թէ Կիւրակէ։

Տէրունական օրն ի՞նչպէս սուրբ պահելու ենք։

— Աստուծոյ աղօթք և ծառայութիւն ընելով, առանձին մեր տուներուն մէջ և ժամերգութեան մասնակցելով և թէ հոգեշահ գործերով զբաղելով։

Որո՞նք են հոգեշահ գործերը։

— Սուրբ գիրքը մանաւանդ Սուրբ Աւետարանն ընթեռնուլ, քարոզ լսել, ողորմութեան այլ եւ այլ գործեր ընել, միեւնոյն շաբթուան մէջ մեր ունեցած վարքն ու գործերը քննել և շնորհապարտ ըլլալ Աստուծոյ, իր առ մեզ ըրած բոլոր բարութիւններուն համար ։

Ուրեմն կիրակի օրն ի՞նչ բանէ զգուշանալու է ։

— Զգուշանալու է մեղապարտ զուարճութիւններէ, դատարկապորտութենէ, խաղամոլութենէ և մոլի կենցաղավարութենէ ։

Ուրեմն ի՞նչպէս կ'անարգուի կիրակին ։

— Ով որ զանց կ'ընէ աղօթք ընելն իր տան մէջ կամ ժամուն մէջ, և կամ իր աղօթքն ընէ թեթեւօրէն կամ կիսատ, նա կիրակին սուրբ պահած չըլլար ։

Կիրակին սուրբ պահելով մարդ ուրիշ ի՞նչ օգուտ ունի ։

— Կիրակին սուրբ պահելով մեր մարմինը կը զօրանայ և միտքը կը կազդուրուի, այնպէս որ շատ հեշտ կ'ըլլան մեզ կիրակէին յաջորդող օրերուն մէջ մեր բոլոր աշխատութիւնները ։

*Այս պատուէրը պահողներուն ի՞նչ կը խոստանայ Աստուած ։*

— Ով որ Աստուծոյ այս նուիրական օրը սուրբ պահէ և սուրբ պահել տայ իրեններուն և հանգիստ ընել տայ իր անասուններուն անգամ, պիտի ընդունի մեծագոյն բարութիւններ, որպէս խոստացած է Աստուած (Ելք. Ի. 8-10) ։

---

## ԴԱՍ ԺԵ.

## ԾՆՈՂԱՍԻՐՈՒԹԻՒՆ

*Հինգերորդ պատուէրով Աստուած ի՞նչ կը հրամայէ ։*

— Կը հրամայէ պատուել մեր հայրն ու մայրը ։

*Մեր ծնողքը ի՞նչպէս պատուել պէտք է ։*

— Տալով նոցա յարգանք, սէր, հնազանդութիւն և օգնութիւն ։

*Ի՞նչպէս կը յարգուին ծնողք ։*

— Ծնողք կը յարգուին եթէ որդիք սիրով մտիկ ընեն անոնց խրատներուն և անոնց յան-

դիմանութիւններէն զգուշանան և թէ անոնց թերութիւններուն իսկ համբերող ըլլան ։

Ինչո՞ւ պէտք է յարգուին ծնողք ։

— Վասն զի նոքա մեզ հոգ տարած են և մեր անդորրութեանն ու յառաջդիմութեանը համար փափաք ու աշխատութիւն ունեցած են ։

Աստուած ի՞նչ խոստացած է իրենց ծնողքը յարգող զաւակներուն ։

— Ով որ իր հօրն ու մօրը օրհնութիւնը կ՚ընդունի, Աստուծմէ պիտի օրհնուի և պիտի վայելէ երկար և երջանիկ կեանք ։

Ծնողասիրութեան ի՞նչ օրինակ կայ Սուրբ Գրքին մէջ ։

— Շատ օրինակներ կան, որոնց գլխաւորներն են Յովսէփ նահապետ և Սողոմոն իմաստուն ։

Ի՞նչպէս ։

— Յովսէփ որ Եգիպտոսի Փարաւոն արքային երկրորդն էր, իրեն ամօթ չհամարեց դիմաւորել իր ծերունի հայրն ու երկրպագելով պատուել ։ Իսկ Սողոմոն՝ երբ լսեց թէ իր մայրը կուգայ, ընդ առաջ երթալով երկրպագութիւն ըրաւ և զանի իր աջ կողմը նստեցուց ։

Ծնողք ինչո՞ւ աւելի եւս սիրուելու են ։

— Վասն զի անոնք իրենց զաւակներուն՝ ոչ թէ միայն կեանք տուած են, այլ և անոնց սիրոյն համար կրած են հոգեր, ցաւեր և զրկանքներ ։

Ծնողաց իրենց զաւակներուն ամենէն մեծ բարիքն ո՞րն է ։

— Եթէ ծնողք իրենց զաւակներուն տուած են ընտիր դաստիարակութիւն և հոգ տարած են որ իրենց զաւակներն ըլլան բարի և գործունեայ ու իմաստուն, ըրած են ուրեմն մեծագոյն բարիք, ուստի և արժանի են իրենց զաւակներուն յաւիտենական շնորհապարտութեանը ։

Սուրբ Գրքին մէջ ծնողասիրութեան ամենէն մեծ օրինակն ո՞վ է ։

— Տէրն մեր Յիսուս Քրիստոս, որ հնազանդ էր իր ծնողաց, և խաչին վրայ չարչարուած ատենն անգամ յիշեց իր մայրն ու իր սէրն ու խնամքն յայտնեց ։

Անհնազանդ որդին ի՞նչ պատիժ ունի ։

— Անհնազանդ որդի մը Աստուծոյ օրհնութենէն և ընկերութեան մէջ պատիւէ զրկուած է միշտ ։

Այսպիսիներուն համար Աստուած ի՞նչ ըսած է ։

— Այն զաւակն, որ իր հայրը կամ մայրը կ'արհամարհէ, կը բամբասէ ու կ'անիծէ, մահապարտ է. այս է աստուածային վճիռը ։

Ծնողք ինչո՞ւ օգտուելու են իրենց որդիներէն ։

— Վասն զի զաւակներն որովհետեւ իրենց ծնողաց բարութիւնները վայելած են երբեմն, ուրեմն արդար հատուցում ըրած կ'ըլլան, երբ օգնեն անոնց, մանաւանդ երբ անոնք ըլլան աղքատութեան, հիւանդութեան և ծերութեան մէջ ։

---

## ԴԱՍ ԺՁ.

## ՈՐԴԵՍԻՐՈՒԹԻՒՆ

Ծնողք ի՞նչ պարտքեր ունին առ որդիս ։

— Ծնողք ո՛չ միայն իրենց զաւակները սիրելու և խնամելու են, այլ և իրենց զաւակներուն կրթութիւնն, արուեստի և գիտութեանց մէջ անոնց յառաջդիմութեանը հոգատար ըլլալու են ։

Ծնողք իրենց առ որդիս սիրոյն մէջ չափ ունենալո՞ւ են ։

— Այո՛, վասն զի եթէ ծնողք իրենց զաւակներուն երես տան և անոնց մանր մունր թերութիւններուն համար աչք գոցեն և անոնց ամեն խօսքերը կատարեն, պիտի տեսնեն որ իրենց զաւակներն եղած են օր մը աներես և անկիրթ, մոլի և թշուառ, և իրենց զաւակներուն անէծքին և Աստուծոյ պատուհասին պիտի ենթարկուին ։

Սէրը հաւասար ըլլալո՞ւ է ։

— Այո՛, ծնողք իրենց զաւակները սիրելու են հաւասարապէս, բնաւ իրարմէ չխտրելով, վասն զի մին կամ միւսը աւելի պակաս սիրելն է անիրաւութիւն և յոյժ մեծ մեղք ։

Ծնողք ուրիշ ի՞նչ զգուշութիւն ընելու են ։

— Զգուշանալու են որ իրենց զաւակներն իրենցմէ անպարկեշտ խօսք չլսեն և յոռի բարք կամ վարք չտեսնեն, վասն զի օրինակը շատ կ՚ազդէ մանուկներու, թող որ ըսուած է թէ «Մէկ օրինակը հազար խրատ կ՚արժէ» ։

Ծնողք ուրիշ ի՞նչ պարտք ունին ։

— Աղօթելու են Աստուծոյ իրենց զաւակաց համար և գոնէ կիրակի և տօնական օրերուն

մէջ իրենց զաւակներուն հետ Աստուծոյ տունը երթալ և զանոնք Աստուծոյ ցոյց տալով շնորհապարտութեամբ խոստովանիլ թէ նոքա աստուածատուր պարգեւ են ։

Սուրբ Գրքին մէջ ի՞նչ օրինակ կայ ։

— Քրիստոս այն տղաքը միայն գրկեց ու օրհնեց, որոնց ծնողք իրեն բերին որ օրհնէ ։ և Յիսուս շատ անգամ իր աշակերտներուն կը գրուցէր թէ Աստուծոյ արքայութիւնը այդպիսիններուն, այսինքն Աստուծմէ օրհնուած զաւակներու է ։

Ծնողք ի՞նչպէս վարուելու են անառակ զաւակաց հետ ։

— Ծնողաց ամենէն դժբախտութիւնն է անառակ զաւակ ունենալն, որոնց հետ քաղցրութեամբ վարուելու են միշտ, խրատելու և յորդորելու են որ անառակը դարձի գայ, երբեմն տալով նաեւ թեթեւ պատիժներ ։

Ծնողք ուրիշ ի՞նչ ընելու են ։

— Ծնողք հանապազ Աստուծոյ ողորմութիւնը հայցելու են, վասն զի Աստուծոյ անհուն գթութիւնը կարող է դարձի բերել անառակը, եթէ ծնողաց հաւատքն ըլլայ խորին և հաստատուն ։

Մեր ծնողքէն զատ ուրիշները պատուելո՞ւ ենք ։

— Մեր ծնողքէն ու ծնողական իշխանութիւնը յարգելէ զատ՝ պատուելու ենք Եկեղեցական և Քաղաքական իշխանութիւնները, որք Աստուծմէ հաստատուած են մեր պատւոյն, ինչպէս և կենաց ապահովութեան համար ։ Եւ այդ իշխանութեանց պաշտօնեաներն՝ թագաւոր ու հայրապետ, եպիսկոպոս և իշխան, վարդապետ և վարժապետ, քահանայ և թաղական և մեծ և հանրութեան ծառայող ու բարերարող բոլոր մարդիկ արժանի են միշտ մեր սիրոյն ու յարգանաց, վասն զի անոնք մեզ կը համարուին հոգեւոր ծնողք իրենց ծառայութեամբն ու բարերարութեամբը ։

Ուրեմն այս հինգերորդ պատուէրին պարտականութիւնն ի՞նչ է ։

— Պատուել մեր հայրն ու մայրը, հնազանդիլ և օգնել անոնց, նոյնպէս քաղաքական և կրօնական իշխանութեանց. չկայ առաքինութիւն մը մարդկութեան բարերար, որքան այս պատուէրին գործադրութեամբ եղած առաքինութիւնը ։ Երանի՜ այն տան և երկրին ուր այս պատուէր կը գործադրուի ճշդութեամբ, հոն Աստուած կը բնակի ։

# ԴԱՍ ԺԷ.

## ՍՊԱՆՈՒԹԻՒՆ

*Վեցերորդ պատուէրով Աստուած ի՞նչ կը հրամայէ։*

— Կը հրամայէ սպանութիւն չընել, վասն զի կարելի չէ մեզ տալ ուրիշի կեանք, ուրեմն զայն ուրիշէն կապտելն է անհուելի ամբարշտութիւն և Աստուծոյ դէմ անհնարին ոճի՛ր, զի Նա է բացարձակ տէր կենաց և մահու։

*Ինչո՞ւ մեծ ոճիր է։*

— Վասն զի մարդասպանութեամբ ո՛չ թէ միայն աստուածային բարկութիւնը կը գրգռենք, այլ և մարդկային իշխանութիւնն ու ընկերութիւնը, որք սպաննուած մարդուն տանն ու ընտանեաց սուգն ու աղէտը տեսնելով՝ աւելի եւս վրէժխնդիր կ՚ըլլան։

*Մարդ կրնա՞յ զինքն սպաննել։*

— Ո՛չ, վասն զի մարդ չէ իր կեանքին տէրը, այլ Աստուած է։ Ո՛չ մէկ նեղութիւն կամ ձախորդութիւն և կամ դառ-

նազոյն վիշտ կ՚ստիպեն մարդուն որ կենազրաւ ըլլայ. յիմարութեան գործ է անձնասպանութիւնը, քանի որ աշխարհիս մէջ չկայ ձախողուած մը կամ ո՛ եւ է անհռելի դէպք որ տեւական ըլլայ։

Մարդասպանութիւնն ե՞րբ է օրինաւոր։

— Մարդասպանութիւնն է օրինաւոր, եթէ իշխանութեան օրէնքին համաձայն է։

Այդ պատուէրով միայն Աստուած սպանութի՞ւնը կ՚արգելու։

— Ո՛չ, այլ և կ՚արգիլէ նաեւ ատել մեր ընկերը, նոյն իսկ մեր սրտին մէջ։

Կա՛յ ուրիշ կերպ մարդասպանութիւն։

— Այո՛ երկրորդ, մեր ընկերը նախատելն ու անիծելը, անոր շահուն վնասելն ու անոր դէմ քէն պահելը, անոր զարնելն ու ծեծելը և վիրաւորելը մարդասպանութիւն են։

Ուրիշ ալ կա՞յ։

— Այո՛ երրորդ, մեր ընկերը թելադրել որ ուրիշին վնաս ընէ, կռուրտի ու վիրաւորէ։ Նոյնպէս, թոյլ տալ որ մեր ընկերն անառակութեամբ և մոլութեամբ զինքը փճացնէ. այս ամէնն են մարդասպանութիւն։

Այս վեցերորդ պատուէրով ի՞նչ ըմբըռնելու ենք։

— Այս վեցերորդ պատուէրով ըմբռնելու ենք թէ մեր և ուրիշներուն կեանքն է անգին, և զայն վտանգելն է ուրանալ Աստուծոյ վրէժխնդիր զօրութիւնը, ուստի զգուշանալ պէտք է չվնասելու համար մեր և ուրիշին կեանքը, որ է աստուածային աւանդ։

---

## ԴԱՍ ԺԲ.

### ՇՆՈՒԹԻՒՆ

Եօթներորդ պատուէրով Աստուած ի՞նչ կը հրամայէ։

— Կը հրամայէ զգուշանալ այն մոլութենէն որ կը թունաւորէ մեր կեանքը, և աւելի եւս անպատիւ կ՚ընէ զմեզ և ցաւագար։

Ուրեմն այս պատուէրն ի՞նչպէս կատարելու է։

— Ողջախոհութեամբ և պարկեշտութեամբ։

Ողջախոհութեամբ ի՞նչպէս։

— Հաւատալով թէ Աստուած ամէն գաղտնի գործ կը տեսնէ, մարդ կ՚ըլլայ ժուժկալ. և կ՚զգուշանայ իր կիրքերը գրգռող լպիրշ մտածումներէ, անամօթ խօսակցութիւններէ, մոլի ընկերներէ, անպատիւ զբօսարաններէ, խէնէշ վէպեր և լկտի գիրքեր կարդալէ և երգեր լսելէ :

Պարկեշտութեամբ ի՞նչպէս :

— Չգործածելով երբէք շպար և սեթեւեթ, նազանք և յայրատ նայուածք՝ ուրիշի հրապուրելի ըլլալու համար, մանաւանդ զգուշանալով ցոփ և ախտամոլ ընկերակցութենէ, որք մարդկային մարմինը կ՚եղծանեն որ աստուածակերտ տաճար է սրբութեան :

Աստուած ի՞նչ հրամայած է մեզ այս մեղքին դէմ:

— Ամուսնութիւն, զոր Աստուած դրախտին մէջ օրհնեց առաջին մարդուն ու կնոջ ըսելով. «Աճեցէք և բազմացարուք» :

Այր ու կին իրարու ի՞նչ պարտք ունին :

— Այր ու կին իրարու պարտին սէր, խնամք և պատիւ, զորս իրարու տալու են անկեղծութեամբ և վստահութեամբ :

Էրիկ մարդուն առ իր կին սէրն ի՞նչպէս ըլլալու է ։

— Էրիկ մարդ մը Աստուծմէ յետոյ բացարձակապէս իր սէրը տալու է իր կնոջ, որպէս հրամայուած է. «Թողցէ այր զհայր իւր և զմայր և երթիցէ զհետ կնոջ իւրոյ» ։

Կնոջ պարտքն ի՞նչ է առ իր այր ։

— Ան ալ Աստուծմէ յետոյ բացարձակապէս իր սէրը տալու է իր էրիկին, որուն հետ սիրալիր հնազանդութեամբ կապուելու է, վասն զի Աստուած կնոջ ըսաւ. «Առ այր քո դարձ քո և նա տիրեսցէ քեզ» ։

Ընտանեկան սիրոյ մէջ ամենէն պէտքի բանը ո՞րն է ուրեմն ։

— Փոխադարձ հաւատարմութիւն և համակերպութիւն իրարու ամէն դէպքի մէջ, փորձութիւն ըլլայ այն, թէ յաջողութիւն ։

Ուրեմն ամուսինք ի՞նչ ընելու են այս մասին ։

— Աղօթել միշտ Աստուծոյ որ իրենց ամուսնութիւնը սուրբ և բարեյաջող պահէ և պահպանէ իրենց տնակը խաղաղութեան մէջ ։

Այս պատուէրը ի՞նչպէս կը պահուի ։

— Հաւատալով որ ինչպէս Աստուած մեր հոգիին տէրն է, տէրն է և մեր մարմինին. և սրբապիղծ է ան որ այս գարշելի մեղքը կը գործէ, արժանի աստուածային և մարդկային արդար զայրոյթին և մինչեւ իսկ մահու պատուհասի։

---

## ԴԱՍ ԺԹ.

### ԳՈՂՈՒԹԻՒՆ

*Ութերորդ պատուէրով Աստուած ի՞նչ կը հրամայէ։*

— Կը հրամայէ գողութիւն չընել, այսինքն ուրիշի ունեցածը չյափշտակել ո՛և է նպատակով։

*Ինչո՞ւ գողութիւնը մեղք է։*

— Վասն զի անիրաւութիւն է ուրիշին ընել զայն, զոր չենք ուզեր որ ուրիշը մեզի ընէ. նաեւ մարդ ուրիշին օգնելու է, ոչ թէ զրկելու է անիրաւութեամբ։

*Քանի՞ կերպով գողութիւն կ՚ըլլայ։*

— Խարդախութեամբ և բռնութեամբ։

Խարդախութեամբ գողութիւնը ի՞նչպէս է։

— Սուտ ու խաբերայ միջոցներով ի վնաս ուրիշին՝ անիրաւ շահեր ընել գնելով, ծախելով և խոստումը չկատարելով։

Գնելով եղած գողութիւնը ո՞րն է։

— Երբ մարդ ծախու առած բանի մը ամբողջը չվճարեր, և կամ ծախողին նեղութենէն կամ միամտութենէն օգուտ քաղելով կը շորթէ, այս է տեսակ մը գողութիւն։

Ծախելով եղած գողութիւնը ո՞րն է։

— Ո եւ է մէկ ապրանք որ անարժէք է, չափազանց սուղ ծախել, կամ գնողին նեղութեան ու միամտութեան վիճակէն օգուտ քաղելով քշել, և կամ կշիռն ու չափը պակաս տալ, այս ալ տեսակ մը գողութիւն է։

Բռնութեամբ գողութիւնը ո՞րն է։

— Ո եւ է կերպով ուրիշին ձեռքէն անոր ունեցածը դրաւելն է կամ յափշտակելը։

Ծառաներն ու գործաւորները գողութեան մեղք ի՞նչպէս կը գործեն։

— Անոնք եւս կը մեղանչեն, երբ իրենց ծառայութիւնը կը կատարեն թերի, այսինքն իրենց յանձն առած պայմանին համաձայն չեն աշխատիր, կամ իրենց տէրոջը համար բան

մը երբ գնեն , անհոգաբար սուղ կը գնեն , և կամ իրենց տէրոջմէն աւելին կը պահանջեն ի՛նչ որ գնած են ատեն , խաւմիկն կ՚ընեն ։

Այս մեղքէն ի՞նչպէս կարելի է քաւուիլ ։

— Զղջալով , այսինքն ետ տալով ինչ որ առնուած է ուրիշէն և կամ առածին արժէ-քին համեմատ փոխարէնը տալով ։

Գողութեան օրինակներ կա՞ն Սուրբ Գիր-քին մէջ ։

— Շատ օրինակներ կան , որոնց մէջ են Ազար , որ Երիքովի մէջ ըրած գողութեանը համար քարկոծուեցաւ ։ Գեհզի՝ Եղիսէ մարգա-րէին փոքրաւորը , որ բորոտեցաւ ։ Անանիա և Սափիրայ՝ էրիկ ու կնիկ յանկարծամահ եղան ։

Ամենէն սարսափելի օրինակն ո՞րն է ։

— Իսկարիովտացի Յուդան , որ իր Տէրը մատնեց և յետոյ խղճէն խայթուելով խեղ-դամահ եղաւ ։

Այս պատուէրէն ի՞նչ ըմբռնելու ենք ։

— Այս պատուէրէն ըմբռնելու ենք թէ Աստուած է մեր և ուրիշի ունեցածին տէրը , և երբ աստուածային տնօրէնութեան տակ վայելենք ինչ որ տուած է Աստուած , այն է բարին ։

# ԴԱՍ Ի.

## ՍՈՒՏ ՎԿԱՅՈՒԹԻՒՆ

*Իններորդ պատուէրով. Աստուած ի՞նչ կը հրամայէ ։*

*— Կը հրամայէ սուտ վկայութիւն չընել ։*

*Սուտ վկայութիւնն ի՞նչ է ։*

*— Սուտ վկայութիւնն է այնպիսի մեղք, որով մեր ընկերին պատիւը կը վիրաւորուի, կեանքը կը դառնանայ և շահերն ու հարըստութիւնը կը վնասուին կամ կը փճանան ։*

*Սուտ վկայութենէն ի՞նչ կը հետեւի ։*

*— Սուտ վկայութենէն կը հետեւի զրպարտութեան մեղքը, վասն զի ով որ սուտ կը վկայէ, կը զրպարտէ ։*

*Ինչո՞ւ զրպարտութիւնը մեղք է ։*

*— Վասն զի զրպարտութիւնը շուտով բերնէ բերան կը տարածուի, և մարդիկ ընդհանրապէս դիւրաւ կը հաւատան գէշ համբաւներու ։*

*Սուտ վկայութիւնը կամ զրպարտութիւնը միայն խօսքո՞վ կ'ըլլայ ։*

— Ո՛չ, այլ և գրով, որով ա՛լ աւելի կը ծանրանայ զրպարտողին և սուտ վկայողին մեղքը ։

Սուտ վկայութենէ կամ զրպարտութենէ զատ ուրիշ ի՞նչ մեղք կայ ։

— Սուտ վկայութենէ կամ զրպարտութենէ զատ՝ կայ քսութեան մեղքը, այսինքն խօսք խառնելով ընկերն ընկերի դէմ գրգռելու մեղքը ։ Բամբասանքն ու չարախօսութիւնն և լեզուագարութիւնը քսութեան տեսակներն են ։

Այդ մեղքերն որո՞նք կը գործեն ։

— Տգէտ ու պարապորդ և շատախօս մարդիկ ։ Տգէտը՝ ծուռն ու շիտակը առանց որոշելու կը խօսի. պարապորդը՝ մանաւանդ կնիկներ, տնէ տուն կը պտըտին և խօսք կը նիւթեն ։ Իսկ շատախօսները ստիպուած են սուտ ու փուտ խօսքեր հնարելու և շաղակրատելու ։

Այդ մեղքերէն ի՞նչպէս կարելի է զերծանել ։

— Յիշելով Քրիստոսի սա խօսքը « Թէ վասն ամենայն դատարկ բանի՝ համարս տալոց էք յաւուրն դատաստանի » ։

Այս իններորդ պատուէրին դէմ ուրիշ ի՞նչ մեղքեր կան։

— Ստախօսութիւն, շողոքորդութիւն և մատնութիւն։

Ի՞նչ է ստախօսութիւնը։

— Սուտն իրաւ և իրաւն իբր սուտ խօսելով ուրիշը համոզելն է։

Ստախօսութիւնն ի՞նչ վնասներ ունի։

— Ստախօսութեամբ ընկերութեան մէջէն վստահութիւնը կը վերնայ, և ստախօսը կ'ըլլայ հետզհետէ զրպարտող, քսու և սուտ վկայ ու այնքան անպատիւ, որ օր մը եթէ ճշմարիտ բան մը ըսէ, ոչ ոք կը հաւատայ։

Այս մեղքին դէմ ի՞նչ ընել պէտք է։

— Պէտք չէ հաւատալ ստախօսին, և միշտ քննելու է թէ ով որ չար կը խօսի ուրիշի մը համար, ունի շահ մը, և կամ թէ չար նպատակ մը։

Շողոքորդութիւնն ի՞նչ է։

— Շողոքորդութիւնն է գովել մէկը առաքինութեան մը համար որ չունի, և կամ թէ ուրիշի մը մեղքը ծածկել և մոլութիւնը արդարացնել։

Շողոքորդութիւնն ինչէ՞ն կը հետեւի։

— Շահասիրութենէ, և չկայ մեղք մը այնքան ստորին որքան այս մեղքը, վասն զի այդ մեղքը գործելով՝ ոչ թէ մարդ իր անձին նուաստութիւնը կը յայտնէ, այլ և ուրիշին հպարտութիւնը փաղաքշելով անոր անձին հոգւով և մարմնով կորստեան պատճառ կ'ըլլայ։

Մատնութիւնն ի՞նչ է։

— Մատնութիւնը մեղք է, վասն զի մարդ ուրիշը կը մատնէ սուտով, և անոր շահուն, կեանքին ու պատուոյն կը վնասէ, և այս է ամենամեծ վատութիւնը։

Ինչո՞ւ մատնութիւնը սուտ վկայութեան հետ կապուած է։

— Վասն զի մարդ մը որ սուտ կը վկայէ, մատնութիւն ընելու հակամէտ է, քանի որ մեղք գործելու համար անձին շահը ամէն բանէ վեր կ'ուզէ ունենալ։

Այս իններորդ պատուէրէն ի՞նչ իմանալու ենք։

— Այս իններորդ պատուէրով գիտնալ պէտք է թէ Աստուած կը պատժէ սուտ վկա-

յօղը, և ով որ կը գործէ այս մեղքը և կ՚ընէ շատախօսութիւն ու քսութիւն՝ նաեւ շաղակրատութիւն և մատնութիւն, գիտնալու է թէ ենթարկուած է Աստուծոյ արդար բարկութեանն ու դատաստանին ։

---

# ԴԱՍ ԻԱ.

## ՑԱՆԿՈՒԹԻՒՆ

Տասներորդ պատուէրով Աստուած ի՞նչ կը հրամայէ ։

Կը հրամայէ ուրիշին ունեցածին չցանկալ, այսինքն ուրիշին ունեցածը յափշտակելու խորհուրդն ու գործը չունենալ ։

Ինչո՞ւ ։

— Վասն զի մարդ մը բարի ըլլալու համար բաւական չէ չարիք չընելը, այլ պէտք է որ բնաւ չար չմտածէ, գիտնալով որ այդ մտածումը՝ աստուածային արդարութեան դէմ է ։

Ցանկութիւնը ինչո՞ւ ծանր մեղք է ։

— Վասն զի ցանկութենէն կը ծնի նա-

*խանձը, որ կը թունաւորէ մեր սիրտն ու կեանքն, այնպէս մը կարծել տալով մեզ թէ Աստուած մեզ քիչ է տուեր, իսկ ուրիշին շատ ։*

*Ցանկութեան մեղքը չգործելուն հնարն ի՞նչ է ։*

*— Գոհ ըլլալ մեր վիճակէն. աշխարհիս մէջ մարդ երջանիկ է, երբ գոհ է իր վիճակէն ։*

*Առաքեալն այս մասին ի՞նչ կը գրէ ։*

*« Բան մը չբերինք այս աշխարհ և բան մը չենք կրնար տանիլ, գոհ ըլլանք ինչ որ ունինք. աւելին փափաքիլը՝ մանաւանդ անիրաւութեամբ, կորստեան դիմել է » (Ա. Տիմ. Զ. 6-11 ։*

*Տասնաբանեայ այս պատուէրներուն համառօտութիւնն ի՞նչ է ։*

*— Քրիստոս այս բոլոր պատուէրներուն իմաստն ի մի ամփոփելով համառօտեց սա խօսքով ։ « Սիրեսցես զտէր Աստուած քո յամենայն սրտէ քումմէ և յամենայն զօրութենէ և զընկեր քո իբրև զանձն քո » ։*

# ԴԱՍ ԻԹ.

## ՀԻՆ ՈՒԽՏ

*Տասնաբանեայ պատուէրէն զատ Աստուած ուրիշ ի՞նչ օրէնքներ տուաւ։*

*— Որպէս զի ժողովուրդը բարեպաշտութեամբ, խաղաղութեամբ և արդարութեամբ ապրի, Աստուած տուաւ ծիսական և քաղաքական օրէնքներ։*

*Ծիսական օրէնքներն ի՞նչ էին։*

*— Զոհերու, տարեկան տօներու, շաբաթ օրուան, քահանաներու օծութեան, անոնց զգեստներու կերպին և ուրիշ ծէսերու համար հրահանգներ, որոց պահպանութեան համար Աստուած ընտրեց քահանայութիւնը։*

*Ո՞վ եղաւ առաջին քահանայապետը։*

*— Ահարոն, որ Մովսէսի եղբայրն էր և Ղեւեայ ցեղէն, և Աստուծոյ հրամանով միշտ գործակից եղաւ Մովսէսի։*

*Աստուած ուրիշ ի՞նչ հրամայեց։*

*— Աստուած հրամայեց Մովսէսի, որ քա-*

ռակուսի վրան մը չինէ, և զայն կոչէ Խորան վկայութեան ։

Խորանը քանի՞ մասի կը բաժնուէր ։

— Երկու մասի. ներքին մասը կը կոչուէր Սրբութիւն սրբութեանց, և վարագուրով մը կը զատուէր երկրորդէն, որ կ'ըսուէր Սրբութիւն, այս ալ նոյնպէս կը զատուէր արտաքին գաւթէն վարագուրով մը ։

Սրբութիւն սրբութեանցին մէջ ի՞նչ կար ։

— Տապանակն, որ էր արկղիկ մը քերովբէներու թեւերուն տակ ծածկուած և որուն մէջ՝ կային մաս մը մանանայ, Ահարոնի ծաղկեալ գաւազանն ու Մովսէսի հնգամատեանը ։

Սրբութեան մէջ ի՞նչ կային ։

— Խնկոց սեղանը, առաջաւորութեան հացին սեղանը և ոսկիէ աշտանակը. հոս կը մտնէին քահանաները խունկ ծխելու համար ։

Արտաքին գաւթին մէջ ի՞նչ կային ։

— Պղնձէ ծով ըսուած աւազանը և ողջակիզաց սեղանը. հոս կուգար ժողովուրդն աղօթք ու զոհ ընելու համար ։

Իսրայէլ քանի՞ տարեկան տօն ունէր ։

— Երեք. Զատկի կամ Պասէքի տօնն՝ ի

յիշատակ Իսրայէլի Եգիպտոսէ ելլելուն . Պէնտէկոստէի տօնն՝ ի յիշատակ Սինէական օրէնսդրութեան և Տաղաւարահարաց տօնն՝ ի յիշատակ Իսրայէլի անապատի մէջ քառասունամեայ պանդխտութեան ։

Ուրիշ տօն չունէի՞ն ։

— Ուրիշ մէկ մեծ տօն մը եւս ունէին, որ Քաւութեան տօն կը կոչուէր . այն օրը Քահանայապետը կը մտնէր ի Սրբութիւնն սրբութեանց, իր հետ բերելով երկու նոխազ, որոց մին կը զոհէր ի քաւութիւն իւր և ժողովրդեան մեղաց և միւսը կ՚արձակէր անապատը ։

Քահանայապետին մեծ պաշտօնն ի՞նչ էր ։

— Տարին մէկ անգամ մը կը մտնէր խորանէն ներս, ի Սրբութիւն սրբութեանց, և կը պատարագէր խոյ մը, որոյ արիւնը կը սրսկէր բոլոր ժողովրդեան վրայ, իր և անոնց մեղաց թողութեանը համար ։

Որո՞ւ օրինակ էր ։

— Քահանայապետն էր Քրիստոսի օրինակ, և խոյի պատարագը կը նշանակէր այն մեծ Զոհը որ պիտի ըլլար համօրէն մարդկութեան մեղաց թողութեանը և փրկութեանը համար ։

— Հաւատալով որ ինչպէս Աստուած մեր հոգիին տէրն է, տէրն է և մեր մարմինին. և սրբապիղծ է ան որ այս գարշելի մեղքը կը գործէ, արժանի աստուածային և մարդկային արդար զայրոյթին և մինչեւ իսկ մահու պատուհասի ։

---

## ԴԱՍ ԺԹ.

## ԳՈՂՈՒԹԻՒՆ

Ութերորդ պատուէրով Աստուած ի՞նչ կը հրամայէ ։

— Կը հրամայէ գողութիւն չընել, այսինքն ուրիշի ունեցածը չյափշտակել ո՛ և է նպատակով ։

Ինչո՞ւ գողութիւնը մեղք է ։

— Վասն զի անիրաւութիւն է ուրիշին ընել զայն, զոր չենք ուզեր որ ուրիշը մեզի ընէ. նաեւ մարդ ուրիշին օգնելու է, ոչ թէ զրկելու է անիրաւութեամբ ։

Քանի՞ կերպով գողութիւն կ'ըլլայ ։

— Խարդախութեամբ և բռնութեամբ ։

Խարդախութեամբ գողութիւնը ի՞նչպէս է ։

— Սուտ ու խաբերայ միջոցներով ի վնաս ուրիշին՝ անիրաւ շահեր ընել գնելով, ծախելով և խոստումը չկատարելով ։

Գնելով եղած գողութիւնը ո՞րն է ։

— Երբ մարդ ծախու առած բանի մը ամբողջը չվճարեր, և կամ ծախողին նեղութենէն կամ միամտութենէն օգուտ քաղելով կը չորթէ, այս է տեսակ մը գողութիւն ։

Ծախելով եղած գողութիւնը ո՞րն է ։

— Ո եւ է մէկ ապրանք որ անարժէք է, չափազանց սուղ ծախել, կամ գնողին նեղութեան ու միամտութեան վիճակէն օգուտ քաղելով քշել, և կամ կշիռն ու չափը պակաս տալ, այս ալ տեսակ մը գողութիւն է ։

Բռնութեամբ գողութիւնը ո՞րն է ։

— Ո եւ է կերպով ուրիշին ձեռքէն անոր ունեցածը գրաւելն է կամ յափշտակելը ։

Ծառաներն ու գործաւորները գողութեան մեղք ի՞նչպէս կը գործեն ։

— Անոնք եւս կը մեղանչեն, երբ իրենց ծառայութիւնը կը կատարեն թերի, այսինքն իրենց յանձն առած պայմանին համաձայն չեն աշխատիր, կամ իրենց տէրոջը համար բան

մը երբ գնեն, անհոգաբար սուղ կը գնեն, և կամ իրենց տէրոջմէն աւելին կը պահանջեն ի՛նչ որ գնած են աժան, խաւմիւն կ՚ընեն։

Այս մեղքէն ի՞նչպէս կարելի է քաւուիլ։

— Զղջալով, այսինքն ետ տալով ինչ որ առնուած է ուրիշէն և կամ առածին արժէքին համեմատ փոխարէնը տալով։

Գողութեան օրինակներ կա՞ն Սուրբ Գիրքին մէջ։

— Շատ օրինակներ կան, որոնց մէջ են Աքար, որ Երիքովի մէջ ըրած գողութեանը համար քարկոծուեցաւ։ Գէեզի՝ Եղիսէ մարգարէին փոքրաւորը, որ բորոտեցաւ։ Անանիա և Սափիրայ՝ երիկ ու կնիկ յանկարծամահ եղան։

Ամենէն սարսափելի օրինակն ո՞րն է։

— Իսկարիովտացի Յուդան, որ իր Տէրը մատնեց և յետոյ խղճէն խայթուելով խեղդամահ եղաւ։

Այս պատուէրէն ի՞նչ ըմբռնելու ենք։

— Այս պատուէրէն ըմբռնելու ենք թէ Աստուած է մեր և ուրիշի ունեցածին տէրը, և երբ աստուածային տնօրէնութեան տակ վայելենք ինչ որ տուած է Աստուած, այն է բարին։

---

# ԴԱՍ Ի.

## ՍՈՒՏ ՎԿԱՅՈՒԹԻՒՆ

*Իններորդ պատուէրով. Աստուած ի՞նչ կը հրամայէ։*

— Կը հրամայէ սուտ վկայութիւն չընել։

*Սուտ վկայութիւնն ի՞նչ է։*

— Սուտ վկայութիւնն է այնպիսի մեղք, որով մեր ընկերին պատիւը կը վիրաւորուի, կեանքը կը դառնանայ և շահերն ու հարըստութիւնը կը վնասուին կամ կը փճանան։

*Սուտ վկայութենէն ի՞նչ կը հետևի։*

— Սուտ վկայութենէն կը հետևի զրպարտութեան մեղքը, վասն զի ով որ սուտ կը վկայէ, կը զրպարտէ։

*Ինչո՞ւ զրպարտութիւնը մեղք է։*

— Վասն զի զրպարտութիւնը շուտով բերնէ բերան կը տարածուի, և մարդիկ ընդհանրապէս դիւրաւ կը հաւատան դէշ համբաւներու։

*Սուտ վկայութիւնը կամ զրպարտութիւնը միայն խօսքո՞վ կ'ըլլայ։*

— Ո՛չ, այլ և գրով, որով ա՛լ աւելի կը ծանրանայ զրպարտողին և սուտ վկայողին մեղքը։

Սուտ վկայութենէ կամ զրպարտութենէ զատ ուրիշ ի՞նչ մեղք կայ։

— Սուտ վկայութենէ կամ զրպարտութենէ զատ՝ կայ քսութեան մեղքը, այսինքն խօսք խառնելով ընկերն ընկերի դէմ գրգռելու մեղքը։ Բամբասանքն ու չարախօսութիւնն և լեզուագարութիւնը քսութեան տեսակներն են։

Այդ մեղքերն որո՞նք կը գործեն։

— Տղէտ ու պարապորդ և շատախօս մարդիկ։ Տղէտը՝ ծուռն ու շիտակը առանց որոշելու կը խօսի. պարապորդը՝ մանաւանդ կնիկներ, տնէ տուն կը պտըտին և խօսք կը նիւթեն։ Իսկ շատախօսները սովորած են սուտ ու փուտ խօսքեր հնարելու և շաղակրատելու։

Այդ մեղքերէն ի՞նչպէս կարելի է զերծանել։

— Յիշելով Քրիստոսի սա խօսքը «Թէ վասն ամենայն դատարկ բանի՝ համարս տայցեք յաւուրն դատաստանի»։

Այս իններորդ պատուէրին դէմ ուրիշ ի՞նչ մեղքեր կան։

— Ստախօսութիւն, շողոքորթութիւն և մատնութիւն։

Ի՞նչ է ստախօսութիւնը։

— Սուտն իրաւ և իրաւն իբր սուտ խօսելով ուրիշը համոզելն է։

Ստախօսութիւնն ի՞նչ վնասներ ունի։

— Ստախօսութեամբ ընկերութեան մէջէն վստահութիւնը կը վերնայ, և ստախօսը կ'ըլլայ հետզհետէ զրպարտող, քսու և սուտ վկայ ու այնքան անպատիւ, որ օր մը եթէ ճշմարիտ բան մը ըսէ, ոչ ոք կը հաւատայ։

Այս մեղքին դէմ ի՞նչ ընել պէտք է։

— Պէտք չէ հաւատալ ստախօսին, և միշտ քննելու է թէ ով որ չար կը խօսի ուրիշի մը համար, ունի շահ մը, և կամ թէ չար նպատակ մը։

Շողոքորթութիւնն ի՞նչ է։

— Շողոքորթութիւնն է գովել մէկը առաքինութեան մը համար որ չունի, և կամ թէ ուրիշի մը մեղքը ծածկել և մոլութիւնը արդարացնել։

Շողոքորթութիւնն ինչէ՞ն կը հետեւի ։

— Շահասիրութենէ, և չկայ մեղք մը այնքան ստորին որքան այս մեղքը, վասն զի այդ մեղքը գործելով՝ ոչ թէ մարդ իր անձին նուաստութիւնը կը յայտնէ, այլ և ուրիշին հպարտութիւնը փաղաքշելով անոր անձին հոգւով և մարմնով կորստեան պատճառ կ՚ըլլայ ։

Մատնութիւնն ի՞նչ է ։

— Մատնութիւնը մեղք է, վասն զի մարդ ուրիշը կը մատնէ սուտով, և անոր շահուն, կեանքին ու պատուոյն կը վնասէ, և այս է ամենամեծ վատութիւնը ։

Ինչո՞ւ մատնութիւնը սուտ վկայութեան հետ կապուած է։

— Վասն զի մարդ մը որ սուտ կը վկայէ, մատնութիւն ընելու հակամէտ է, քանի որ մեղք գործելու համար անձին շահը ամէն բանէ վեր կ՚ուզէ ունենալ ։

Այս իններորդ պատուէրէն ի՞նչ իմանալու ենք ։

— Այս իններորդ պատուէրով գիտնալ պէտք է թէ Աստուած կը պատժէ սուտ վկա-

յողը, և ով որ կը գործէ այս մեղքը և կ՚ընէ շատախօսութիւն ու քսութիւն՝ նաև շաղակրատութիւն և մատնութիւն, գիտնալու է թէ ենթարկուած է Աստուծոյ արդար բարկութեանն ու դատաստանին :

---

## ԴԱՍ ԽԱ.

### ՑԱՆԿՈՒԹԻՒՆ

Տասներորդ պատուէրով Աստուած ի՞նչ կը հրամայէ :

Կը հրամայէ ուրիշին ունեցածին չցանկալ, այսինքն ուրիշին ունեցածը յափշտակելու խորհուրդն ու գործը չունենալ :

Ինչո՞ւ :

— Վասն զի մարդ մը բարի ըլլալու համար բաւական չէ չարիք չընելը, այլ պէտք է որ բնաւ չար չմտածէ, գիտնալով որ այդ մտածումը՝ աստուածային արդարութեան դէմ է :

Ցանկութիւնը ինչո՞ւ ծանր մեղք է :

— Վասն զի ցանկութենէն կը ծնի նա-

խանձը, որ կը թունաւորէ մեր սիրտն ու կեանքն, այնպէս մը կարծել տալով մեզ թէ Աստուած մեզ քիչ է տուեր, իսկ ուրիշին շատ։

Ցանկութեան մեղքը չգործելուն հնարն ի՞նչ է։

— Գոհ ըլլալ մեր վիճակէն. աշխարհիս մէջ մարդ երջանիկ է, երբ գոհ է իր վիճակէն։

Առաքեալն այս մասին ի՞նչ կը գրէ։

«Բան մը չբերինք այս աշխարհ և բան մը չենք կրնար տանիլ, գոհ ըլլանք ինչ որ ունինք. աւելին փափաքիլը՝ մանաւանդ անիրաւութեամբ, կորստեան դիմել է» (Ա. Տիմ. Զ. 6-11։

Տասնաբանեայ այս պատուէրներուն համառօտութիւնն ի՞նչ է։

— Քրիստոս այս բոլոր պատուէրներուն իմաստն ի մի ամփոփելով համառօտեց սա խօսքով։ «Սիրեսցես զտէր Աստուած քո յամենայն սրտէ քումմէ և յամենայն զօրութենէ և զընկեր քո իբրեւ զանձն քո»։

# ԴԱՍ ԻԲ.

## ՀԻՆ ՈՒԽՏ

*Տասնաբանեայ պատուէրէն զատ Աստուած ուրիշ ի՞նչ օրէնքներ տուաւ։*

*— Որպէս զի ժողովուրդը բարեպաշտութեամբ, խաղաղութեամբ և արդարութեամբ ապրի, Աստուած տուաւ ծիսական և քաղաքական օրէնքներ։*

*Ծիսական օրէնքներն ի՞նչ էին։*

*— Զոհերու, տարեկան տօներու, շաբաթ օրուան, քահանաներու օծութեան, անոնց զգեստներու կերպին և ուրիշ ծէսերու համար հրահանգներ, որոց պահպանութեան համար Աստուած ընտրեց քահանայութիւնը։*

*Ո՞վ եղաւ առաջին քահանայապետը։*

*— Ահարոն, որ Մովսէսի եղբայրն էր և Ղեւեայ ցեղէն, և Աստուծոյ հրամանով միշտ գործակից եղաւ Մովսէսի։*

*Աստուած ուրիշ ի՞նչ հրամայեց։*

*— Աստուած հրամայեց Մովսէսի, որ քա-*

ռակուսի վրան մը չինէ, և զայն կոչէ Խորան վկայութեան ։

Խորանը քանի՞ մասի կը բաժնուէր ։

— Երկու մասի. ներքին մասը կը կոչուէր Սրբութիւն սրբութեանց, և վարագուրով մը կը զատուէր երկրորդէն, որ կ՚ըսուէր Սրբութիւն, այս ալ նոյնպէս կը զատուէր արտաքին գաւթէն վարագուրով մը ։

Սրբութիւն սրբութեանցին մէջ ի՞նչ կար ։

— Տապանակն, որ էր արկղիկ մը քերովբէներու թեւերուն տակ ծածկուած և որուն մէջ՝ կային մաս մը մանանայ, Ահարոնի ծաղկեալ գաւազանն ու Մովսէսի հնգամատեանը ։

Սրբութեան մէջ ի՞նչ կային ։

— Խնկոց սեղանը, առաջաւորութեան հացին սեղանը և ոսկիէ աշտանակը. հոս կը մտնէին քահանաները խունկ ծխելու համար ։

Արտաքին գաւթին մէջ ի՞նչ կային ։

— Պղնձէ ծով ըսուած աւազանը և ողջակիզաց սեղանը. հոս կուգար ժողովուրդն աղօթք ու զոհ ընելու համար ։

Իսրայէլ քանի՞ տարեկան տօն ունէր ։

— Երեք. Զատկի կամ Պասեքի տօնն՝ է

յիշատակ Իսրայելի Եգիպտոսէ ելլելուն . Պէնտէկոստէի տօնն՝ ի յիշատակ Սինէական օրէնսդրութեան և Տաղաւարահարաց տօնն՝ ի յիշատակ Իսրայելի անապատի մէջ քառանամեայ պանդխտութեան ։

Ուրիշ տօն չունէի՞ն ։

— Ուրիշ մէկ մեծ տօն մը եւս ունէին, որ Քաւութեան տօն կը կոչուէր . այն օրը Քահանայապետը կը մտնէր ի Սրբութիւնն սըրբութեանց, իր հետ բերելով երկու նոխազ, որոց մին կը զոհէր ի քաւութիւն իւր և ժողովրդեան մեղաց և միւսը կ'արձակէր անապատը ։

Քահանայապետին մեծ պաշտօնն ի՞նչ էր ։

— Տարին մէկ անգամ մը կը մտնէր խորանէն ներս, ի Սրբութիւն սրբութեանց, և կը պատարագէր խոյ մը, որոյ արիւնը կը սրսկէր բոլոր ժողովրդեան վրայ, իր և անոնց մեղաց թողութեանը համար ։

Որո՞ւ օրինակ էր ։

— Քահանայապետն էր Քրիստոսի օրինակ, և խոյի պատարագը կը նշանակէր այն մեծ Զոհը որ պիտի ըլլար համօրէն մարդկութեան մեղաց թողութեանը և փրկութեանը համար ։

Քահանայապետն ուրիշ ի՞նչ պաշտօն ունէր։

— Քահանայապետն էր ժողովուրդին հոգեւոր տէրը. հսկող էր ծէսերու պահպանութեան և քահանաներուն կարգապահութեան և օրինաց ամենէն մեծ գործադիրը։

Քահանայապետին Աստուած ի՞նչ շնորհ տուած էր։

— Քահանայապետն այնքան մեծագոյն շնորհ ստացած էր Աստուծմէ, որ շատ անգամ ժողովրդեան կը հաղորդէր աստուածային պատգամներ։

Քաղաքական օրէնքներն ի՞նչ էին։

— Ժողովրդեան առտնին և ընկերային վիճակը բարեկրթող և իւրաքանչիւր անձի կեանքն ու պատիւը և ինչքը ապահովող հրահանգներ։

Մովսէս ի՞նչ գուշակեց Մեսիայի համար։

— Մովսէս բացէ ի բաց խօսեցաւ ժողովրդեան և գրեց թէ «Մարգարէ մը պիտի ելլէ ձեր մէջ ինծի պէս, անոր մտիկ ըրէք»։

Այն ատեն այս նահապետներէն զատ ուրիշ աստուածապաշտներ չկայի՞ն։

— Կային Յոբ և անոր երեք բարեկամները, որք յԱրաբիա կ'ապրէին ճշմարիտ աստուածպաշտութեամբ։

Յոբայ կեանքն ի՞նչպէս էր ։

— Յոբ էր արդար և երկիւղած մարդ , և Աստուծոյ օրհնութեամբ ո՛չ թէ մանչ ու աղջիկ զաւակներ ունեցաւ , այլ անթիւ հարըստութիւն , որոնցմէ հետզհետէ ո՛չ թէ միայն զրկուեցաւ , այլ և չարաչար վէրքերով տառապեցաւ , այլ սակայն « Տէր ետ և Տէր էառ », այս նշանաւոր խօսքն արտասանելով կը մխիթարուէր և երբէք չյուսահատեցաւ ։

Յոբայ վախճանն ի՞նչ եղաւ ։

— Աստուած տեսնելով Յոբայ գերագոյն և համբերատար առաքինութիւնը, վերստին օրհնեց զանի , անոր կրկին և կրկին տալով մանչ ու աղջիկ զաւակներ և անթիւ հարստութիւններ , որպէս կը պատմուի Յոբայ գրքին մէջ ։

Այս գրքին պարունակութիւնն ի՞նչ է ։

— Այս է . մարդ բնաւ կարծելու չէ , թէ ի՛նչ ձախորդութիւն որ կը կրէ աշխարհիս մէջ , է միմիայն իր մեղաց երեսէն . այլ թէ շատ անգամ Աստուծմէ մարդ կը փորձուի ձախորդութիւններու ենթարկուելով , ի հանդէս հանելու համար իր հաւատքն առ Աստուած և իր անյուսահատ ոգին ։

---

# ԴԱՍ ԻԳ.

## ԴԱՏԱՒՈՐՔ

*Մովսէսէն յետոյ փրկութեան խորհուրդն ի՞նչպէս պահպանուեցաւ։*

— Դատաւորներ և Մարգարէներ իրարու յաջորդելով և Աստուծմէ ներշնչուելով պահպանեցին միշտ սա համոզքը և յոյսը, թէ Աստուած մը կայ և թէ պիտի գայ Փրկիչը։

*Ո՞վ եղաւ առաջին Դատաւորը։*

— Յեսու, որ Իսրայէլացիները տեղաւորեց Աւետեաց երկրին մէջ։

*Յեսու որո՞ւ օրինակ էր։*

— Ինչպէս Յեսու Իսրայէլը տեղաւորեց Աւետեաց երկրին մէջ, այնպէս Փրկիչը մարդկութիւնը պիտի տեղաւորէր նոր աշխարհի մը, երկնքի մէջ։

*Յեսուէն յետոյ ուրիշ ո՞վ օրինակ եղաւ Մեսիայի համար։*

— Գեդէոն, որ Աստուծմէ խնդրեց թէ պիտի յաղթէ Իսրայէլի թշնամիներուն, եթէ գիշերը գետինը փռած գզաթը թրջուի և գե-

տինը չոր մնայ . առաւօտուն ելաւ տեսաւ որ գետինը չոր էր և գզաթէն քամուեցաւ կոնք մը ջուր : Յետոյ ուզեց որ գետինը թրջուի և գզաթը չոր մնայ , այն ալ եղաւ :

Այդ ի՞նչ կը նշանակէր :

— Մեսիայի կուսէ մը ծնելուն նշան էր , որ պիտի կատարուէր աստուածային անքննին տնօրինութեամբ :

Չեղա՞ն ուրիշ դատաւորներ :

— Ամէն ատեն երբ Իսրայէլ նեղութեան մը կը մատնուէր և հաւատով Աստուծոյ կ'աղաղակէր , Աստուած կը փրկէր Իսրայէլը ուրիշ Դատաւորներ հանելով :

Այդ Դատաւորներուն մէջ որո՞նք նշանաւոր են :

— Սամսոն , որոյ ծնունդն եղաւ հրաշալի , և ուխտաւոր եղաւ գինի և օղի բնաւ չխմելու և մազերը չկտրելու համար . Նոյնպէս Յեփթայէ՝ որ իր մէկ հատիկ աղջիկը կուսութեան զոհեց , իր ուխտը կատարած ըլլալու համար : Եղան և ուրիշ դատաւորներ որոց վերջինն եղաւ Սամուէլ , որ միանգամայն քահանայապետ էր :

*Հեթանոսներուն մէջ չեղա՞ւ Մեսիայի համար գուշակող։*

*— Բաղաամ որ հեթանոս էր և եկած էր Իսրայէլը անիծելու, այլ հակառակը ընելով օրհնեց, գուշակելով թէ պիտի ծագի Յակոբայ Լոյսը (Թիւք ԻԴ. 17)։*

---

## ԴԱՍ ԻԴ.

## ՄԵԾ ՄԱՐԳԱՐԷՔ

*Դատաւորութիւնն ի՞նչպէս վերջացաւ։*

*— Ժողովուրդը Սամուէլէն խնդրեց որ տէր իշխան մը ունենայ, և Աստուած հրամայեց Սամուէլի որ Սաւուղը արքայ օծէ։*

*Սաւուղի վախճանն ի՞նչ եղաւ։*

*— Սաւուղ թէեւ ի սկզբան հաւատարիմ մնաց Աստուծոյ, այլ յետոյ ապստամբելուն համար Աստուած հրամայեց Սամուէլի որ Սաւուղին տեղ Դաւիթը օծէ։*

*Դաւիթ ի՞նչ ըրաւ։*

*— Ոչ թէ միայն Իսրայէլը փրկեց իր բոլոր թշնամիներէն, այլ և գրեց ու երգեց և ժո-*

ղովրդեան սրտին մէջ տպաւորեց թէ պիտի գայ Փրկիչը։

Աստուած Դաւիթի ի՞նչ խոստացաւ։

— Աստուած տեսնելով Դաւթի հաւատքը և հաւատարմութիւնը, խոստացաւ որ անոր ցեղէն ծնի Փրկիչը։

Ո՞րն է այդ խոստումը։

— «Երդուաւ Տէր՝ Դաւթի, և ոչ զղջացի. ի պտղոյ որովայնի նորա նստուցանել յաթոռ նորա»։

Ուրիշ ի՞նչ մարգարէութիւններ ըրաւ Դաւիթ։

— Որպէս զի չկարծուի թէ Փրկիչը Դաւթի որդին լինելով Դաւիթէն փոքր է, ուստի Դաւիթ գրեց. «Ասաց Տէր զՏէր իմ. Նիստ ընդ աջմէ իմմէ, մինչեւ եդից զթշնամիս քո պատուանդան ոտից քոց»։

Ուրիշ ի՞նչ մարգարէութիւններ ըրաւ։

— Դաւիթ ոչ թէ միայն Մեսիայի փառքը մարգարէացաւ, այլ և անարգանքը և չարչարանքը՝ զոր Նա պիտի կրէր աշխարհիս մէջ։

Դաւթի մարգարէութիւնները ո՞ւր ամփոփուած են։

— Սաղմոսներուն մէջ, որ երգեր են, որոց մէջ կան նաեւ սրտառուչ աղօթքներ առ Աստ-

ուած և թէ կը պատմեն Աստուծոյ անչափ բարիքն ու գթութիւնը և հրաշալի գործերը։

Դաւիթին ո՞վ յաջորդեց։

— Սողոմոն, որ իր Դաւիթ հօրը կտակը գործադրելու համար հոյակապ տաճար մը շինեց և Վկայութեան խորանը և ուխտի Տապանակը հոն փոխադրեց։

Սողոմոն հաւատարիմ մնա՞ց Աստուծոյ։

— Սողոմոն իր ծերութեան ատեն մոլորեցաւ, իր օտարազգի կիներէն կռապաշտութեան հրապուրուելով, ուստի Աստուած սպառնացաւ Սողոմոնի տունը զրկել ամբողջ Իսրայելի վրայ իշխելու իրաւունքէն։

Կատարուեցա՞ւ այդ սպառնալիքը։

— Այո՛, վասն զի Սողոմոնի մեռնելէն յետոյ, Իսրայելի տասը ցեղերը իշխանութիւն մը կազմեցին, որոյ մայրաքաղաքն եղաւ նախ Սիւքէմ և յետոյ Սամարիա, իսկ երկու ցեղերուն մայրաքաղաքն եղաւ միշտ Երուսաղէմ։

Իսրայելի վիճակն այն ատեն ի՞նչ եղաւ։

— Իսրայել թէեւ իրարմէ բաժնուած տկարացաւ, այլ Աստուած այդ ժողովուրդը իսպառ չլքանեց ատեն ատեն Մարգարէներ զրկելով։

Մարգարէներուն մէջ ո՞վ եղաւ նշանաւոր ։

— Եղիա, որ կոյս ապրեցաւ, և այլեւայլ հրաշքներ ընելով կը յորդորէր ժողովրդեան հեռանալ կռապաշտութենէ, և չթողուլ ճշմարիտ Աստուծոյ օրէնքը ։

Եղիայի վախճանն ի՞նչ եղաւ ։

— Այնքան սիրելի եղաւ Աստուծոյ, որ օր մը յանկարծ հրեղէն երիվարներէ և կառքերէ շրջապատուելով երկինք տարուեցաւ ։

Եղիա ինչո՞ւ վերացաւ ։

— Որպէս զի հաստատուի սա հաւատքը թէ միշտ ապրելու փափաքը՝ որ մարդ ունի, կրնայ կատարուիլ, և այս եղաւ միանգամայն հաւատք ժողովրդեան մէջ թէ Եղիա պիտի գայ նորէն և ցոյց տայ Մեսիան ։

Եղիայէն յետոյ ո՞վ եղաւ նշանաւոր ։

— Եղիսէ, որ Եղիայի աշակերտելէ յետոյ շատ հրաշագործութիւններ ըրաւ, և զգուշացուց ժողովուրդը կռապաշտութենէ ։

Եղիսէի վախճանն ի՞նչ եղաւ ։

— Աստուած իր այս սուրբը ինչպէս կենդանութեան ատեն, մեռնելէն յետոյ եւս փառաւորեց. դիակ մը Եղիսէի ոսկորներուն

դպչելով կենդանացաւ, որով հաստատուեցաւ թէ ոսկորները միշտ կենդանի են և հրաշագործող։

Ուրիշ ո՞վ նշանաւոր եղաւ։

— Եսայի, որ ո՛չ թէ միայն Եղիայի ու Եղիսէի պէս բանիւ զԱստուած քարոզեց, այլեւ իր մարգարէութիւնները գրով աւանդեց։

Մեսիայի համար ի՞նչ մարգարէացաւ Եսայի։

— Յայտնապէս քարոզեց ու գրեց թէ Նա պիտի ծնի կուսէ մը, որ Դաւթի ցեղէն պիտի ըլլայ. և ո՛չ թէ միայն Մեսիային աստուածային փառքը նկարագրեց, այլ և չարչարանքն ու մահն անգամ։

Եսայիէն յետոյ ո՞վ նշանաւոր եղաւ։

— Երեմիա, որ շատ նեղութիւններ և բանտարկութիւններ կրեց. լալով մարգարէացաւ Երուսաղեմի աւերը, և ժողովրդեան քարոզելով Աստուծոյ գթութիւնը՝ գուշակեց թէ Իսրայելի բաբելոնեան գերութիւնը եօթանասուն տարի միայն պիտի տեւէր։

Երեմիայէն յետոյ ո՞վ նշանաւոր եղաւ։

— Նոյն իսկ Երեմիայի ժամանակ Եզեկիէլ եւս սկսաւ մարգարէանալ, և ի Բաբելոն կը մխիթարէր ժողովուրդը, քարոզելով և գրելով

թէ կործանած տաճարին և աւերակ եղած Երուսաղէմին տեղ՝ աւելի փառաւորը պիտի ունենայ Իսրայէլ, թագաւորութեամբ Մեսիայի։

Ուրիշ ո՞վ նշանաւոր եղաւ։

— Դանիէլ, որ ի Բաբելոն թէեւ գերի տարուած էր, այլ իր առաքինութեամբ և իմաստութեամբ այնքան սիրելի եղաւ որ բարձրագոյն պատիւներու արժանացաւ. և Մեսիայի համար ո՛չ թէ միայն մարգարէութիւններ ըրաւ, այլ և անոր գալստեան ժամանակը ճշդեց, գրելով թէ չորս հարիւր իննսուն տարիէն յետոյ պիտի գայ։

Այդ մարգարէներէն յետոյ եղա՞ն ուրիշներ։

— Եսայի և Երեմիա, Եզեկիէլ և Դանիէլ, այս չորս մեծ մարգարէներէն զատ՝ եղան այլ և այլ ժամանակներու մէջ տասներկու մարգարէներ, որոնք գրաւոր մարգարէութիւններ ըրին, միշտ Մեսիայի վրայ խօսելով, և ըսուեցան Փոքր-Մարգարէներ, իրենց գրուածներն ու գործերը միւս չորսին չափ ընդարձակ չըլլալուն համար։

---

# ԴԱՍ ԻԵ.

## ՓՈՔՐ ՄԱՐԳԱՐԷՔ

Տասներկու մարգարէներու քարոզութեանց բովանդակութիւն ի՞նչ էր։

— Այս էր թէ քանի որ Մեսիան պիտի գայ, ժողովուրդը պատրաստ ըլլալու է, և Մեսիայի բոլոր տնօրէնութիւնները միառմի նշանակեցին։

Ովսէէի և Ամովսէի մարգարէութիւններն ի՞նչ էին։

— Ովսէէ մարգարէացաւ թէ Աստուած պիտի լքանէ Իսրայէլն ու պիտի որդեգրէ հեթանոսները։ Իսկ Ամովսէ մարգարէացաւ թէ արեւը պիտի խաւարի, ակնարկելով Մեսիայի խաչուիլը։

Միքիայի և Յովելի մարգարէութիւններն ի՞նչ էին։

— Միքիա նշանակեց նոյն իսկ Մեսիայի ծննդեան տեղը այսինքն Բեթլեհէմը. իսկ Յովէլ գուշակեց թէ Աստուծոյ Հոգին պիտի իջնէ, ակնարկելով Առաքեալներուն վերնատան մէջ առած շնորհը։

Աբդիուի և Յովնանի մարգարէութիւններն ի՞նչ էին ։

— Աբդիու ակնարկելով Եդոմմայեցիներուն կործանումը, գուշակեց դեւերու իշխանութեան վախճանը. իսկ Յովնան օրինակ եղաւ, Մեսիայի երեք օր և երեք գիշեր գերեզմանի մէջ մնալուն։

Նաւումի և Ամբակումի մարգարէութիւններն ի՞նչ էին ։

— Նաւում մարգարէացաւ Առաքեալներուն քարոզութիւնը . իսկ Ամբակում Մեսիային աւազակներուն մէջ խաչուիլը ։

Սոփոնիայի և Անգէի մարգարէութիւններն ի՞նչ էին ։

— Սոփոնիա կը մարգարէանայ թէ Աստուած նոր ժողովուրդ մը պիտի ընտրէր . իսկ Անգէ Մեսիայի միւսանգամ գալուստն այսինքն վերջին դատաստանը կը գուշակէր ։

Զաքարիայի և Մաղաքիայի մարգարէութիւններն ի՞նչ էին ։

— Զաքարիա մարգարէացաւ թէ Քրիստոս աւանակի վրայ նստած պիտի մտնէ Երուսաղէմ, այլ սակայն յետոյ պիտի չարչարուի ։ Իսկ Մաղաքիա մարգարէացաւ թէ Մեսիա յանկարծ պիտի գայ տաճարը , և թէ պիտի ընէ նաեւ վերջին դատաստանը ։

## ԴԱՍ ԻՋ.

### ՎԵՐՋ ՀԻՆ ՈՒԽՏԻ

*Բաբելոնի գերութիւնն ի՞նչպէս վերջացաւ։*

*— Ինչպէս գուշակած էր Երեմիա, եօթանասուն տարիէն յետոյ ժողովուրդը Բաբելոնէ վերադարձաւ և սկսաւ տաճարը շինել, խրախուսուելով Զաքարիա և Անգէ մարգարէներու յորդորներէն։*

*Իսրայէլ տաճարի երկրորդ անգամ շինութեամբ մխիթարուեցա՞ւ։*

*— Տաճարի շէնքը որչափ որ փառաւոր էր, այլ ժողովուրդը լացաւ, վասն զի հոն կը պակսէին Տապանակն ու Վկայութեան խորանը։ Եւ շատ մը տարիներէ ի վեր մարգարէներուն ձայնը լռած ըլլալով՝ ալ աւելի տրտմած էր, մանաւանդ երբ տեսաւ թէ այն փոքրիկ իշխանութիւնն ալ որ Դաւթի ցեղն ունէր, վերջացաւ օտարազգի Հերովդէսի ձեռամբ։ Այսպէս երբ լրացան բոլոր մարգարէութիւններն ու Դանիէլեան ժամանակամիջոցը (490 տարի), ծնաւ Մեսիան, որ անուանեցաւ ՅԻՍՈՒՍ ՔՐԻՍՏՈՍ։*

